


Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՑԱՆԴՈՒՐԻ

Դարեր, շատ ու շատ դարեր առաջ մի շեն գյուղ է լինում: Մյուս գյուղերի մարդիկ հեռու-հեռվից նախանձով էին նայում այդ գյուղին. մարգագետինները՝ կանաչ, ծաղկաշատ, հողերը՝ պարարտ, այգիները՝ առատ, պտղաբեր, աղբյուրները՝ սառը, խոխոջուն, անասունը՝ անթիվ, անհամար, մարդիկ՝ հաշտ, համեստ ու աշխատասեր... Մի խոսքով՝ զուր չէր, որ այդ գյուղն անվանում էին դրախտ:

Այնպես պատահեց, որ այդ գյուղում երկու դրկից հարևաններ նույն օրը, նույն գիշերը, նույն ժամին մի-մի տղա ունեցան: Մեկն իր տղային անվանեց Ալո, մյուսը՝ Բլո: Գյուղով մեկ ուրախացան, գնացին աչքալույսի, և քանի որ հարևանները դրկից էին՝ մեկի տնից ելնում, մյուսի տունն էին մտնում, նորածիններին երկար կյանք, երջանկություն ու համերաշխություն մաղթում: Երբ տղաները մի քիչ մեծացան, գյուղը հասկացավ, որ Ալոն կույր է, իսկ Բլոն՝ երկու ոտքից կաղ ու դեռ մի ականջն էլ խուլ: Բայց արի ու տես՝ թե մյուս երեխաները տարին տարվա վրա էին հասակ քաշում, ուժ առնում, սրանք օր-օրի վրա էին մեծանում, այնպես որ, շուտով տըվեցին-անցան գյուղի բոլոր երեխաներին, դարձան տղամարդ և դարձան փորձանք գյուղի գլխին: Ալոն գյուղի մի կեսում էր քայլում, ճոճում մահակը, ջարդ ու փշուր անում անշունչին ու շնչավորին, Բլոն՝ գյուղի մյուս կեսում: Մարդիկ բողոքում էին, ասում էին. «Ախր օրենք կա, կարգ կա, էսպես ո՞նց կարելի է»... Ալոն գոռում էր.

— Ես ոչ մի օրենք ու կարգ չեմ ճանաչում: Օրենքն ու կարգը ես եմ ու իմ մահակը, ինչ ուզեմ՝ կանեմ:

— Օրենքն ու կարգը ես եմ ու իմ մահակը,— գյուղի մյուս կեսում գոռում էր Բլոն,— ես էլ ինչ ուզեմ՝ կանեմ:

Բայց շուտով գյուղի կեսը Ալոյին քիչ թվաց ու նա գոռաց կոկորդով մեկ.

— Էս գյուղը պիտի շարժվի իմ օրենքով: Ես եմ էս գյուղի տերը:

Եվ նրա գոռոցից շրջապատի սարերն ու լեռները դմբդմբացին:

— Ոչ: Էս գյուղը պիտի շարժվի իմ օրենքով,— իր հերթին գոռաց Բլոն, և շրջապատի սարերն ու լեռները նորից դմբդմբացին:

Իսկ ո՞վ է տեսել, որ նույն գյուղը երկու տեր ունենա ու երկու օրենք:

Խեղճ գյուղացիները կրակն էին ընկել՝ չգիտեին նրանցից ո՞ր մեկի օրենքով ու կարգով շարժվեն:

— Գիժը չի ամաչում, գժի տերը պիտի ամաչի,— ասում էին գյուղացիները և լռում:

Բայց ե՞րբ է եղել, որ երկու քանդող, ավերող ուժ վերջիվերջո չգան իրար դեմ դիմաց, մանավանդ որ նույն գյուղում են ապրում ու դեռ դրկից հարևաններ են: Օրերից մի օր իր բակից Ալոն ասաց Բլոյին.

— Ես որ կամ՝ դու ո՞վ ես... Չափդ իմացիր, հերիք է կոպալդ փոփոխացնելով ման գաս իմ գյուղում:

— Փի,— կանչեց Բլոն:— Իմ կոպալի առաջ հեչ Աստված չի կարող առնել: Դու ո՞վ ես, որ ինձ խելք ես սովորեցնում,— և այնպես պտտեցրեց մահակը, որ տվեց, քոքահան արեց Ալոյի այգու ծառերի կեսը:

Ալոն էլ իր հերթին տվեց, քոքահան արեց Բլոյի այգու ծառերի կեսը: Հետո նրանք կաղալով, խարխափելով, բաժանել ցանկացողներին ոտնատակ տալով մոտեցան ու բռնեցին իրար, մի շաբաթ իրար քաշեցին, քաշքշեցին, բայց քանի որ երկուսն էլ նույն ուժն ունեին՝ ոչ մեկը մյուսին չկարողացավ գետնել, և իրար բաց թողեցին:

— Էդպե՞ս,— քթի տակ խնդաց Ալոն,— ես քո հախից պիտի գամ,— ասաց ու գնաց մի շուն բերեց, որ պետք եկած ժամանակ օգնի իրեն:

— Շուն ես բերե՞լ,— շան հաչոցից գլխի ընկավ Բլոն ու մի շուն էլ ինքը բերեց:

—Դու կաղ ես ու խուլ,— գոռում էր Ալոն ու անընդհատ կերակրում շանը, որ զորանա:



— Դու էլ կույր ես,— գոռում էր Բլոն, ունեցած չունեցածը տալիս շանը, որպեսզի Ալոյի շնից ավելի զորեղ լինի:

Շներով ընկած՝ նրանք մոռացան իրենց ավերածությունները, և գյուղը մի առ ժամանակ խախանդվեց:

— Ո՞ւր էր, թե էդ շները շուտ բերեին,— ասում էին գյուղացիք,— հոգիներըս ազատվեց:

Բայց օրերից մի օր գյուղը արթնացավ և տեսավ, որ Ալոյի ու Բլոյի շները դարձել են գայլեր: Իսկ գայլին շան լափով պահել կլինի՞... Ալոն իր ոչխարներով էր կերակրում գայլին, Բլոն՝ իր: Ագահ գայլեր էին, հո չէի՛ն խժռում: Շուտով նրանց ոչխարները վերջացան, և Ալոն ու Բլոն իրենց գայլերին սկսեցին կերակրել գյուղացիների ոչխարներով: Ալոն գյուղի իր կեսից էր ոչխար բերում, գցում գայլի բերանը, Բլոն՝ իր կեսից:

Նրանց ահ ու սարսափից վախեցած խեղճ գյուղացիները ատամները սեղմած լռում էին:

Եվ արի ու տես, որ գյուղի բոլոր ոչխարներն ուտելուց հետո Ալոյի ու Բլոյի գայլերը դարձան առյուծներ: Եվ Ալոն ու Բլոն իրար վրա բռունցք թափահարելով սկսեցին առյուծների առաջ գցել ողջ գյուղի տավարը: Ամեհի առյուծներ էին՝ թաթով տալիս, տապալում էին եզ, կով ու գոմեշ, իսկույն խժռում ու մռնչալ էր, որ մռնչում էին: Գյուղացիները, դաշտ, հող ու այգի մոռացած՝ մտան իրենց տներն ու ամուր փակեցին դուռ ու դարպասները:

Իսկ առյուծները խժռեցին՝ ահագնացան, խժռեցին՝ ահագնացան ու դարձան վիշապներ: Գյուղացիները գլուխներն առած փախան իրենց տներից, կանգնեցին մոտակա սարի գագաթին և տեսան, թե ինչպես Ալոյի վիշապը Բլոյին կուլ տըվեց ու գյուղի կեսը, Բլոյի վիշապը՝ Ալոյին ու գյուղի մյուս կեսը, և գլուխները պոչերին դնելով՝ մրափեցին: Նրանց բերաններից ծուխ ու բոց էր բարձրանում ու խավարեցնում արևի լույսը: Գյուղացիները հասկացան, որ ավերվեց դարերով պահած, պահպանված իրենց շեն գյուղը և ցրվեցին ամեն մեկը մի կողմի վրա: Իսկ դրախտ գյուղում, ասում են, մինչև հիմա էլ վիշապների բերանից դուրս եկող ծխից արեգակի լույսը գետնին չի հասնում:

ՌԱՅՆԵՐ ՄԱՐԻԱ ՌԻԼԿԵ
(1875 1926)
ավստրիացի բանաստեղծ



# Ժողովրդական մեղեդի

Ինձ այնպես է հանգստացնում
Բոհեմական մի մեղեդի,
Հոսում դանդաղ մեջն իմ սրտի՝
Իրենով է լի դարձնում:

Եվ բոստանում կարտոֆիլի
Երեխան է ահա երգում,
Նրա երգի տոնն է զնգում,
Դարձնում մութը երազելի:

Դու կարող ես լինել այդպես,
Ելնել, հեռու երկիր գնալ,
Դառնալ նախկինն ու մանկանալ՝
Տարիներն այդ կանչում են քեզ…

# Գիշերը

Պրագայի վրա մութը պառկեց անձայն,
Բացվեց գիշերն՝ ինչպես անծայրածիր այգի…
Եվ արևը հպարտ՝ մի թիթեռնիկ պայծառ,
Խիտ խոտերի խորքում անհետացավ կրկին…

Բարձր լուսինը՝ մի խարդախ գեռնաոգի,
Ջղաձգվում է նենգ կապկող դեմքը նրա,
Ճերմակ արծաթներ է շաղ տալիս իր գոգից
Մոլդավ գետի դաժան ալիքների վրա:

Վերադառնում է ետ վրդովվելով հանկարծ,
Դրվագված իր դեմքը ինչ-որ տեղ է պահում,
Մի հին թշնամի է նրա առջև կանգնած՝
Աշտարակից պայծառ թվացույցն է նայում:



Տեր Աստված, քաղաքն այս գորշ ու մեծ
Մատնված է երկնային պատժի,
Ո՜ւր փախչի հրդեհից հողմածեծ,
Կավերվի հարվածից մեծ ուժի…
Կորչում է քաղաքն այս գորշ ու մեծ:

Նկուղում ապրելը դժվար է, սիրելիս,
Եվ զոհաբերվող հոտերի հետ վախեցած
Ու նրանց կեցվածքով ժողովուրդն է գալիս:
Ապրում է հողն էլի, դու նրան մոռացած՝
Անցկացնում ես օրերդ անմիտ ու ողբալի:

Այնտեղ, պատերի տակ մանուկներն են աճում,
Միայնակ և այն էլ դժգույն ստվերներով,
Չգիտեն, որ բոլոր ծաղիկներն են գոչում
Քամու դեմ արևոտ օրերի գույներով.
Նկուղներից փոքրերի աղաղակն է հնչում:

Այնտեղ աղջիկը միշտ անհայտին է ձգվում,
Մանկությունից թախծոտ նա ծաղկում է դանդաղ,
Ցնցվող մարմնի միջից երազներն են չքվում,
Եվ մարմինը նրա միշտ էլ թոշնում է վաղ:
Մայրությունն է այնտեղ խցի մեջ թաքնվում,
Ու չի լռում լացը գիշերվա մեջ խարդախ:

Հետնաբակերով այդ անզոր կյանքն է անցնում,
Դժբախտություն է մեծ, երբ որ ցուրտ է տարին,
Եվ կանայք են իրենց «նպատակին» հասնում,
Հիվանդանում են միշտ այդ անողոք պահին,
Ինչպես բանտում՝ նրանք հույսեր էլ չեն տեսնում
Եվ ապրում են՝ դանդաղ հանձնվելով մահին:

# Աշնանային

Իսկ օդը՝ ինչպես որ հիվանդի սենյակում,
Ուր մահը դռան մոտ հսկում է անթերի,
Տանիքների վրա թաց շողերն արնագույն
Նման են ցոլքերին մարմրող մոմերի:

Խռխռում են ջրերը հորդուն առուների,
Անձրևն է մեռած տերևներ լվանում,
Ինչպես փախցրած երամ մորակտցարների՝
Պուրակների կողքով գորշ ամպերն են գնում:

ԹԱՐԳՄԱՆԵՑ ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆԸ

Նկարը ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ԳԱՅԱՆԵ ՍՏԵՓԱՆՅԱՆ

# ՋԱՐԹՈՆՔ

Դաշտերը, որ օծվել են
երկնային կապույտով,
Սպասումի դողն են ապրում
— Որտե՞ղ ես հույսի
ձնծաղիկ առաջին:

Դաշտերը, որ ապրում են
հրճվանքը արթնացման,
խորհուրդներ են կյանքի.
— Որտե՞ղ ես ձնծաղիկ,
ավետիս լույսի:

Դաշտերը, որ գարնանային
անձրևներին գրկում են տաքուկ,
Ողջույն են հղում աշխարհին.
— Ահա ձնծաղիկը՝
հրաշքն առաջին:





ՄԱՐԿ ՏՎԵՆ (1835—1910)

# Գրող

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՈՂԼՅԱՆԻ

Նշանավոր քննիչ Բլենթը միջահասակ և փոքր-ինչ գեր մարդ էր, երբ նա սկըսում էր խորը մտածել, անմիջապես ըզգում էիր, որ քո կողքին կանգնած է մի ականավոր մարդ: Նրա տեսքը ինձ հույս ներշնչեց: Նա խնդրեց ինձ նստել և հանգիստ ասաց.

«Խնդրում եմ, թույլ տվեք ինձ մի րոպե մտածել»:

«Սա սովորական դեպք չէ,— վերջապես ասաց նա,— ամեն ինչ պետք է մընա խիստ գաղտնի: Դեպքի մասին ոչ ոքի հետ չխոսեք, նույնիսկ՝ լրագրողների: Այժմ գործով զբաղվենք»:

Նա թուղթ ու գրիչ վերցրեց:

— Այժմ ասացեք փղի անունը:

— Ջամբո:

— Շատ լավ: Ծննդյան վայրը:

— Սիամի մայրաքաղաք:

— Ծնողները ապրո՞ւմ են:

— Ոչ, մահացել են:

— Նրանք ուրիշ երեխաներ ունեի՞ն բացի այս մեկից:

— Ոչ, նա միակ երեխան էր:

— Շատ լավ: Այժմ նկարագրեք փղին և ոչ մի մանրուք բաց չթողնեք:

Ես նկարագրեցի, իսկ նա գրեց:

Հետո ասաց.

—Անհրաժեշտ է, որ դուք վարձատրություն առաջարկեք: Որքա՞ն կարող եք առաջարկել:

— Դուք ի՞նչ գումար եք ենթադրում,— հարցրի ես:

— Սկզբի համար, ասենք, քսանհինգ հազար դոլար: Սա դժվար գործ է: Գողերը ամենուրեք ընկերներ ունեն:

— Դուք գիտե՞ք ովքեր են նրանք:

— Դա կարևոր չէ: Այժմ ասեք, թե փիղն ի՞նչ է ուտում և որքա՞ն:

— Նա ամեն ինչ ուտում է: Նա մարդ է ուտում, աստվածաշունչ էլ, նա մարդու և աստվածաշնչի միջև ուտում է ինչ ցանկանաք:

# կամ սպիտակ փիղը

— Լավ, շատ լավ, իհարկե, բայց այս ամենը շատ անորոշ է: Մանրամասները անհրաժեշտ են, դրանք շատ կարևոր են մեր գործում: Քանի՞ մարդ կուտի նա, եթե թարմ լինեն:



— Նա հաշվի չի առնում՝ նրանք թարմ են, թե ոչ: Միաժամանակ կարող է ունել հինգ սովորական մարդ:

— Շատ լավ, հինգ մարդ: Մենք դա հաշվի կառնենք: Այժմ աստվածաշնչի մասին: Քանի՞ հատ աստվածաշունչ կարող է նա ունել միաժամանակ:

— Նա կարող է ունել ամբողջ հրատարակությունը:

— Շատ լավ: Ուրիշ էլ ի՞նչ կարող է ունել: Ես ուզում եմ մանրամասներ իմանալ:

— Աստվածաշնչից բացի նա կարող է ունել աղյուսներ, շշեր, կատուներ, խոզապուխտ, շաքար, կարտոֆիլ, կարճ ասած՝ այնպիսի բան չկա, որ նա չուտի:

— Շատ լավ: Նա խմո՞ւմ է:

— Ամեն ինչ. կաթ, ջուր, վիսկի, հընդյուղ, ամեն ինչ, բացի սուրճից:

— Դրանք անսովոր բաներ են, որոնց միջոցով մենք կգտնենք փղին:

Քննիչ Բլենթը մի րոպե լուռ էր և մըտազբաղ: Հետո շրջվեց դեպի ինձ և ասաց հանգիստ ձայնով.

— Ես սովոր չեմ գլուխ գովելու, բայց մենք կգտնենք փղին:

Ես ջերմորեն սեղմեցի նրա ձեռքը և շնորհակալություն հայտնեցի: Որքան շատ էի տեսնում այդ մարդուն, այնքան շատ էի սիրում նրան և այնքան շատ էի հավանում նրա մասնագիտությունը: Ես տուն գնացի ավելի ուրախ սրտով, քան եկել էի այդ հիմնարկը:

Հաջորդ առավոտյան այդ ամենը տըպվեց թերթերում, բոլոր մանրամասներով: Թերթերը քննարկում էին, թե ինչպես էր տեղի ունեցել գողությունը, ովքեր էին գողերը և ուր էին նրանք գնացել փղի հետ միասին: Առաջարկում էին տասնըմեկ տեսակետ՝ բոլորն իրարից տարբեր, բացի մեկից: Դա այն էր, որ չնայած շենքի ետևի պատը ջարդվել էր, սակայն փիղը այդ ճեղքով չէր հեռացել, այլ մի ուրիշ (չհայտնաբերված) բացթողի անցքով: Բոլորն էլ համաձայն էին, որ գողերը խուզարկուներին շեղելու համար են ջարդել պատը:

Տասնմեկ տեսակետներում երեսունյոթ տարբեր գողերի անուններ էին նշվում:

Ես ապշած էի: Ես կարծում էի, որ եթե արդեն թերթերում ամեն ինչ գրված է, գողերը կթաքնվեն: Բայց երբ այդ մասին ասացի քննիչ Բլենթին, նա պատասխանեց.

— Թող թաքնվեն: Միևնույն է, ես նըրանց կգտնեմ իրենց թաքստոցներում: Ինչ վերաբերում է թերթերին, մենք նըրանց չենք կարող պարսավել: Փառքը, հեղինակությունը խուզարկուի համար հաց ու ջուր են: Մենք պետք է մարդկանց միշտ ցույց տանք, թե ինչ ենք անում, այլապես նրանք կմտածեն, որ մենք ոչինչ չենք անում: Ես համաձայնեցի և սկսեցի սպասել լուրերի: Շուտով հեռագրական մեքենան սկսեց չխկչխկալ, և մենք ստացանք հետևյալ հեռագիրը.

«Գնում եմ հետքերով: Կարծում եմ, որ փիղը արևմուտք է շարժվել: Պետք է հետևել նրան այդ ուղղությամբ:

Դարլի, խուզարկու»:

— Դարլին մեր ամենալավ խուզարկուներից մեկն է,— ասաց քննիչը,— մենք շուտով նրանից նոր լուրեր կստանանք:

Եկավ երկրորդ հեռագիրը.

«Հենց նոր տեղ հասա: Ապակու գործարանը գիշերվա ընթացքում կողոպտել են և 800 շիշ են գողացել:

Բեյքեր, խուզարկու»:

— Հրաշալի է,— ասաց քննիչը,— ես ձեզ ասում էի, որ փղի կերակրացանկը մեզ պետք կգա:

Եկավ երրորդ հեռագիրը.

«Գիշերվա ընթացքում անհետացել է խոտի դեզը: Երևի փիղն է կերել»:

Հետո մի ուրիշ հեռագիր եկավ Դարլիից.

«Գնում եմ հետքերով՝ երեք մղոն դեպի արևմուտք: Հանդիպեցի մի գյուղացու: Նա ասում է, որ դրանք ոչ թե փղի հետքերն են, այլ ծառերի համար արված փոսերի, որ նա փորել էր անցյալ ձմեռ: Ցուցմունքներ հաղորդեք, ի՞նչ անեմ»:

— Ահա, տեսնո՞ւմ եք, գողերից մեկը բռնվեց,— ասաց քննիչը:

Նա թելադրեց հետևյալ հեռագիրը Դարլիին:

«Ձերբակալի՛ր այդ մարդուն և ստիպիր, որ նա մյուս գողերի անուններն էլ ասի: Շարունակիր գնալ հետքերով: Եթե անհրաժեշտ է, հասիր մինչև Խաղաղ օվկիանոս»:

Ստացվեց հետևյալ հուզիչ հեռագիրը.

«Հենց նոր տեղ հասա: Գյուղը ամայացած է, միայն հիվանդներն ու ծերերն են մնացել: Փիղն անցել է այստեղից երեք քառորդ ժամ առաջ: Ամբողջ շրջանը մի քանի մղոն տարածության վրա տագնապի մեջ է: Մարդիկ փախչում են

տներից: Փիղը հետապնդում է նրանց: Կան մարդկային զոհեր»:

Դա վերջին հեռագիրն էր:

Հաջորդ առավոտյան թերթերն, ինչպես միշտ, լի էին թարմ նորություններով մեր գործի մասին: Հոդվածներն այսպիսի վերնագրեր ունեին. «Սպիտակ փիղը շարունակում է իր Մահաբեր Արշավանքը»: Բոլոր գյուղերն ամայացած են: Դեղնագույն Սարսափը գնում է Նրա առջևից, իսկ Մահը՝ ետևից: Խուզարկուները գընում են նրանց ետևից: 34 ամենանշանավոր խուզարկուների տեսակետները: Քննիչ Բլենթի տեսակետը»:

Քննիչ Բլենթը գոհ էր: Բայց ես բոլորովին ուրախ չէի: Ինձ թվում էր, թե այդ բոլոր հանցանքները ես էի գործել, և որ փիղը միայն պատճառ էր հանդիսացել: Ես սոսկում էի նոր հեռագրերից: Բայց օրերն անցնում էին, իսկ փիղը չկար: Փղի անհետանալուց երկու շաբաթ անց ես քննիչի խորհրդով վարձատրության գինը ավելացրի մինչև 75 հազար: Դա մեծ գումար էր, սակայն ես նախընտրում էի կորցնել իմ ունեցած ամբողջ փողը, քան փիղը: Միևնույն ժամանակ թերթերը սկսեցին գրոհել խուզարկուների դեմ: Ծաղրանկարիչները նկարում էին նըրանց՝ հեռադիտակով փղին փնտրելիս, իսկ փիղը նրանց ետևում կանգնած խընձոր էր գողանում նրանց գրպաններից: Բայց քննիչ Բլենթն ասաց.

— Թող ծիծաղեն. ծիծաղում է նա, ով վերջում է ծիծաղում:

Փղի անհետանալուց մոտ երեք շաբաթ անց, երբ ես արդեն նրան նորից տեսնելու հույսս բոլորովին կորցրել էի, քննիչը մի նոր փայլուն միտք հղացավ՝ փոխադարձ զիջում գողերի հետ: Նա ասաց, որ ինքը համոզված է, որ գողերը փիղը ետ կվերադարձնեն միայն 100 հազար դոլար ստանալուց հետո: Ես ասացի, որ մի կերպ կարող եմ այդքան գումար ձեռք բերել, բայց խեղճ խուզարկուները կտուժեն, չէ՞ որ նրանք այդքան գործ էին արել: Քննիչը պատասխանեց.

— Փոխադարձ զիջման դեպքում նըրանք միշտ ստանում են գումարի կեսը:— Հետո նա բացատրեց, որ կար մի հատուկ տեղ, որտեղ գողերն ու խուզարկուները հանդիպում էին գործարքներ կատարելու: Հանդիպումը պետք է կայանար հաջորդ օրը, կեսգիշերին:

Մյուս օրը գիշերվա ժամը տասնմեկին ես եկա քննիչ Բլենթի մոտ և նրան հանձնեցի հարյուր հազար դոլլարը՝ իմ ունեցած վերջին գումարը: Նա վերցրեց փողը և գնաց: Վերադարձավ մեկ ժամ անց: Նրա աչքերը փայլում էին հուզմունքից: Նա ասաց.

— Փոխադարձ զիջումը կայացավ: Եկեք իմ հետևից:

Նա մոմ վերցրեց, և մենք ցած իջանք մի սենյակ, որտեղ 60 խուզարկուներ հանգիստ քնած էին, իսկ մի քանիսն էլ տարված էին թղթախաղով:

— Ահա և քո փիղը,— ասաց քննիչ Բլենթը, և ես տեսա հատակին ընկած մի մեծ առարկայի մասեր: Դա այն ամենն էր, ինչ մնացել էր իմ խեղճ Ջամբոյից: Նա ջարդել էր պատը ու դուրս եկել շենքից, բայց կորցրել էր ճանապարհը մառախուղի մեջ և սովից ու ցըրտից տառապելով մնացել էր այնքան, մինչև կրակել էին և սպանել նրան:

Մեծ տոնախմբություն էր խուզարկուների հիմնարկում: Քննիչ Բլենթը, բնականաբար, օրվա հերոսն էր, և նրա երջանկությունն այնքան մեծ էր, որ ես էլ էի ուրախանում այդ տեսնելով, չնայած նման էի մի անտուն մուրացկանի: Շատ հաճելի էր տեսնել, թե խուզարկուները ինչպես էին բաժանում 50 հազար դոլլարը միմյանց միջև:

Շուտով մի հեռագիր ստացվեց Դարլինից: Այնտեղ ասված էր.

«Անտառների միջով գնում եմ փղի հետքերով, որոնք օրեցօր ավելի են մեծանում և թարմանում: Եվս մի շաբաթ, և ես կբռնեմ փղին»:

Քննիչը մի անգամ ևս Դարլինին անվանեց իր «ամենալավ խուզարկուներից» մեկը: Եվ կարգադրեց, որպեսզի նրան հեռագրեն տուն վերադառնալու և իր հասնելիք վարձատրությունը ստանալու մասին:

Այդպես ավարտվեց գողացված փղի պատմությունը: Թերթերը նորից խանդավառվեցին, բացի մեկից: Այդ թերթում գրված էր. «Հոյակա՞պ է խուզարկուն: Նա կարող է մի քիչ դանդաղել այնպիսի մի փոքր բան փնտրելիս, ինչպիսին փիղն է, կարող է փնտրել նրան երեք շաբաթ, բայց վերջապես կգտնի, եթե հայտնվի մի մարդ, ով նրան ցույց տա կորած փղի տեղը»:

Անգլերենից թարգմանեց
ՇՈՂԻԿ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

## Մայրս ծերացած

Ծով համբերություն,
Անհուն բարություն,
Իմ օջախ ու տուն.
Մայրս է ծերացած:

Ուշ աշնան ծաղիկ,
Աղոթք ու խաղիկ,
Աչքում՝ ջինջ շաղիկ.
Մայրս է ծերացած:

Հոգսերի ձեռին՝
Միշտ զուսպ ու լռին,
Հաշտ՝ իր ցավերին.
Մայրս է ծերացած:

Միշտ քնքուշ ու նուրբ,
Տառապյալ ու սուրբ,
Մարող լույս ասուպ.
Մայրս է ծերացած:

## Հողվորը

Գլուխը կախ՝ կլոր տարին
Սերմ է ցանել, հող վարել,
Իր մի կտոր հացն ու բարին
Ծով քրտինքով արարել:

Աչք է գցել երկնի շողին,
Աղոթք հղել առ աստված,
Բայց գտել է արարողին
Ակոսներում իր բացած...

## Երգիս մեջ

Երբ որ ես աչք եմ բացել՝
Մութ էր աստծո սիրտը, պաղ,
Կռիվ էին գնացել
Գյուղի տղերքը հոտաղ...

Շրշում էին ոսկեհեր
Արտերը մեղմ ու մոլոր,
Քույրերն էին մեր ջահել
Դարձել մաճկալ ու հնձվոր:

Հողը ցողվում էր առատ
Մեր մայրերի սուրբ լացից,
Արցունք խառնում մեր կերած
Ամեն պատառ սև հացին:

Ավաղ, այդ ցավը անտես
Դեռ ապրում է իմ հոգում
Ու սրտիս մեջ, երգիս մեջ՝
Մեկ-մեկ այսպես մորմոքում...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



## ԱՇՈՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱ

Ըստ ավանդության՝ Դավիթ Անհաղթը Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի հիմնած դպրոցի կրտսեր աշակերտներից էր: Նա ապրել և ստեղծագործել է 5—6-րդ դարերի սահմանագծում: Դավիթ Անհաղթի մանկությունն ու պատանեկությունը անցել են Տուրուբերան նահանգի Հարք գավառի Հերեթ գյուղում: Նրա հայրը՝ բարեպաշտ և աստվածասեր քահանա Տեր Եղիան, ամեն կերպ ձգտել է իր որդու մեջ սերմանել հայրենասիրության ու ազգասիրության ամենանվիրական զգացմունքները: Մանուկ Դավիթը իր հայրենի Տուրուբերան գավառում էլ գրաճանաչ է դարձել, ստացել նախնական կրթություն, ապա և Վաղարշապատի դպրոցներում ծանոթացել ու հոգեպես կապվել իր ժամանակի հայ նշանավոր եկեղեցական ու մշակութային գործիչների հետ, կարդացել նրանց ստեղծագործությունները: Վաղարշապատում ուսանելու տարիներին պատանի Դավիթը իր մորեղբայրներ Մովսես Խորենացու և Մամբրե Վերծանողի հետ ստացել է հունարեն լեզվի նախնական ծանոթություն, ապա և մասնակցել դեռևս Մեսրոպ Մաշտոցի կողմից ծրագրած հունալեզու մի շարք գրքերի թարգմանության աշխատանքներին: Սակայն ունենալով անհանգիստ հոգի և անսահման ձգտում դեպի ուսումն ու գիտությունը, նա շուտով մի շարք հայ երիտասարդների հետ ուղևորվում է Բյուզանդիա ու Հունաստան՝ ժամանակի առաջավոր կրթական կենտրոնները: Նրա հետ էին իր ազգականներ Մովսեսն ու Մամբրեն և ուրիշներ:

Հայ պատանիները ծովով ճանապարհ են ընկնում դեպի Կոստանդնուպոլիս՝ բյուզանդական կայսրության մայրաքաղաքը: Բյուզանդական Թեոդոս կայսրը մեծ պատիվ ու հարգանքով է ընդունում հայ երիտասարդներին, նրանց պատվին տոնախմբություն է կազմակերպում: Կայսրը պաշտոններ է առաջարկում Մովսեսին արքունի դիվանատանը, իսկ Դավթին՝ հայրապետանոցում, ապա նրանց ուղարկում է վերահսկելու Կարին քաղաքում տարվող շինարարական աշխատանքները: Դավիթն ու Մովսեսը մեծ ջանք են թափում քաղաքի վերակառուցման համար, և շուտով վարձահատույց են լինում իրենց աշխատանքի դիմաց: Կայսրը անձամբ մեծ գովեստ է հայտնում նրանց հասցեին, քանի որ Դավիթն ու Մովսեսը երկրաշարժի հետևանքով քարուքանդ եղած Կարին քաղաքը վերածել էին մի ամուր բերդաքաղաքի և ի պատիվ Թեոդոս կայսեր՝ վերանվանել Թեոդոսուպոլիս: Կայսրը նրանց մեծ պատիվների արժանացնելուց հետո իրավունք է տալիս գնալ Աթենք՝ կրթության պակասը լրացնելու, և Դավիթն ու նրա հետ եղած մյուս հայազգի ուսանողները շուտով ճանապարհ են ընկնում: Աթենքում Դավիթը ծանոթանում է հույն ու բյուզանդացի մեծահռչակ գիտնականների հետ: Թեոդոս կայսեր մահից հետո, ավարտելով բարձրագույն ուսման դասընթացը, Դավիթն ու Մովսեսը վերադառնում են Կոստանդնուպոլիս՝ այնտեղից Հայաստան անցնելու նպատակով: Այդ տարի Բյուզանդիայի կայսերական գահն է բարձրանում Մարկիանոս կայսրը: Դավիթն ու Մովսեսը պարսավում են Մարկիանոս կայսերը՝ եկեղեցական հարցերում նրա ունեցած թյուր ըմբռնումների համար, սխալ են համարում նրա կողմից վարած պետական ու եկեղեցական քաղաքականությունը: Դավիթը կայսրին առաջարկում է այնպիսի քաղաքականություն մշակել, որը չդիպչի հարևան ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի ազգային ինքնուրույնությանը: Դավթի պահանջով հրավիրվում է նոր վեհաժողով, ուր քննարկվելու էին պետական ու եկեղեցական մեծ կարևորություն ունեցող հարցեր: Մարկիանոս կայսրը իր արքունի պալատում ժողով է հրավիրում: Դավիթն ու Մովսեսը վիճաբանություն են սկսում բյուզանդացի եպիսկոպոսների՝ Հոբնալի, Մելիտեսի,

Մամբրեի հետ: Հայ փիլիսոփաներին ուղղվում է 350 հարց, որոնց Դավիթն ու Մովսես հայազգի գիտունները հաղթական պատասխաններ են տալիս: Դավիթը բոլորին ապշեցնում է իր պատասխանների հակիրճությամբ ու խորագիտությամբ: Եպիսկոպոսների այն հարցին, թե ինչ է մարդը, Դավիթը պատասխանում է.

— Մարդը բանական, մահկանացու, մտածելու և գիտություն ընկալելու ընդունակ կենդանի է: Մարդը ստեղծված է աշխարհը զարդարելու համար, քանզի եթե մարդկային սեռը գոյություն չունենար, տիեզերքում ամեն ինչ անկատար կլիներ: Մարդը շնչի միջնորդությամբ կապված հոգու և մարմնի միավորությունն է, աստծու պատկերը:

— Ի՞նչ է գիտությունը:

— Գիտությունը բնությունն ու աշխարհը ճանաչելու գործիք է: Բնությունը որոշ բաներ թաքցրել է մեզանից, իսկ որոշ բաներ էլ ի ցույց է դրել մեզ, դրա համար էլ գոյություն ունի գիտությունը, այսինքն՝ փնտրելը և գտնելը:

— Ո՞րն է մարդկային ճանաչողության սահմանը:

— Մարդու ճանաչողական հնարավորությունն անսահման է: Ինչպե՞ս կարող է ճանաչումը սահման ունենալ, երբ անեզր է բնությունը:

— Ի՞նչ է զգայությունը:

— Զգայությունը մի անտեսանելի ձեռք է, որ զննում է հոգու միջոցով դեպի մարմինը թափանցող անտեսանելի ըզգացումները, և կյանքի թաքուն խորհուրդները ի մի հավաքելով, տրամադրում է մտքին: Զգայելու ընդունակությամբ օժտված են նաև անխոս կենդանիները, զգայարանները նրանց գոյատևելու օգնականներն են:

— Իսկ ինչո՞վ է մարդը գերազանցում կենդանիներին:

— Հոգեկանի տեսակետից՝ խոսելու ընդունակությամբ, իսկ մարմնականի առումով՝ ձեռքերով:

— Իսկ ինչո՞վ է մարդը տարբերվում կենդանուց:

— Մտքով, մտածելու ընդունակությամբ: Մարդու համար ուսումը ամենայն ինչ է: Ուսման, կրթության միջոցով, մարդը բազմաթիվ արհեստներ է ձեռք բերում, իսկ խոսելու ընդունակության միջոցով նոր իմաստությունների է հրազեկ դառնում: Մարդու միտքը կառավարում է զգացմունքները: Միտքը ավելի բարձր է, քան զգացմունքը: Հաճախ կենդանիները ավելի բարձր մակարդակի զգայարաններ ունեն, քան մարդը: Այսպես, այծյամը տեսողությամբ գերազանցում է մարդուն, ավանակը՝ լըսողությամբ, շունը՝ հոտոտելիքով, ոչխարը՝ ճաշակելիքով: Ձին բոլորից առաջ է զգում պատերազմը, անգղը՝ լեշի հոտը, մյուս խոտակեր կենդանիները՝ ձմեռային սաստիկ ցուրտը, ձկները՝ ծովային վտանգը, թռչունները՝ գարնան բույրը, իսկ սարդերի, մեղուների և ծիծեռնակների ճարտարությունը գերազանցում է բոլոր ճարտարապետների հմտություններին...

— Իսկ ինչո՞վ է մարդը նմանվում կենդանիներին:

— Նմանվում է իր կամակոր ու չար ցանկություններով: Աղճատված մարդկային հոգիները ծնում են երկու կարգի ախտավոր ցանկություններ՝ փառասիրություն և որկրամոլություն, առաջինը շքեղ հագնվելու և մեծ պատիվների արժանանալու ձգտումն է, երկրորդը՝ շատակերությունն ու հարբեցողությունը: Փառասիրությունը մեծամիտ, գոռոզ ու երկնամետ հոգիների ցանկությունն է, որկրամոլությունը՝ խոզաբարո, գետնահայաց, երկրաքարշ կենցաղավարության արգասիքը: Ցանկությունները պետք է զսպել գիտենալ, որովհետև դրանք ըստ իրենց բնույթի անհագ են և մեծ վշտեր կարող են պատճառել մարդկանց: Չար ցանկությունը քուն ու դադար չունի, այն խորամանկ է, մարդուն մղում է սպանության, գողության, կեղծավորության, երբեմն մերկանում է իր պատյանից և դավեր նյութում: Այդպես բազմադեմ է այս երկգլխանի հրեշը: Մեր նախնիները այս գազանին տվեցին փող (մամոնա) անունը, այն մարդու վրա իշխում է ոչ միայն մինչև վերջին շունչը, այլև գերեզմանում էլ նրան հանգիստ չի տալիս: Իսկական մարդուն հատկանշական են միայն բարի ցանկությունները՝ սեր, բարություն, կամեցողություն, օգնության հասնելու պատրաստակամություն, ծնողասիրություն, որդեսիրություն, հայրենասիրություն:

Այս կարգի այլևայլ հարցերի էլ է պատասխանում Դավիթը: Հույներն ու բյուզանդացիները ափ ի բերան մնում են ապշած նրա իմաստության վրա, և բոլորը միաբերան նրան հռչակում են ժա-



մանակի առաջին իմաստունը, նրան կարգում են «անհաղթ» և «եռամեծ փիլիսոփա» պատվանուններով: Այս վեհաժողովից հետո Դավիթը պարապում է թարգմանություններով: Նա հունարենից հայերեն է թարգմանում հին աշխարհի մեծ իմաստասերներ Արիստոտելի, Պլատոնի, Պորփյուրի և այլոց գործերը: Դավիթ Անհաղթը Կոստանդնուպոլսում գրում է իր նշանավոր «Իմաստասիրության սահմանումները» երկասիրությունը, որը բացվում է իմաստասիրության, գիտության, կրթության նկատմամբ հեղինակի ունեցած մեծ սերը արտահայտող տողերով. «Ովքեր գեթ մի անգամ իմաստասիրական խոսք են տեսնում և պատեհ առիթ են ունենում լոկ մատի ծայրով ճաշակել նրա քաղցրությունը, նրանք բոլոր երկրավոր հոգսերին մնաք բարյավ ասելով, ողջախոհ մի մոլությամբ անձնատուր են լինում նրան»: Այս տողերը հետագա սերունդների համար հնչում են որպես հրահանգ, կոչ՝ նրանց հրավիրելով մուտք գործել գիտության ու իմաստասիրության սրբազան տաճարը: Ըստ Անհաղթի՝ փիլիսոփայությունը գիտությունների գիտությունն է և արվեստների արվեստը, որից սկիզբ են առնում

մնացած բոլոր գիտությունները ու արվեստները: Փիլիսոփայությունը ունի միայն իրեն հատուկ, ինքնուրույն առարկան՝ ի դեմս համընդհանուր գոյի: Ժամանակի փիլիսոփաներից ոմանք ժխտելով փիլիսոփայության գոյությունը, փորձում էին ապացուցել, որ եթե ամեն ինչ հոսում է և փոփոխվում, ուրեմն դրանց մասին ոչինչ ասել չի կարելի, որովհետև մինչև մենք կփորձենք դրանց մասին կարծիք հայտնել՝ վերջիններս արդեն փոփոխված կլինեն, կլինեն մի ուրիշ բան: Հակառակ այս տեսակետի՝ Դավիթը առաջ է քաշում փիլիսոփայության յուրահատուկ առարկայի մասին միակ ճշմարիտ գաղափարը. «Փիլիսոփայությունը վերաբերում է ոչ թե մասնավոր իրերին, որոնք հարահոսուն և շարժուն են, այլ ընդհանուր գոյերին, որոնք չեն փոփոխվում, նույնն են լինում մշտապես»:

Անհաղթը գտնում է, որ փիլիսոփայությունը ծագել է հիացումից, մարդկային ճանաչողությանը հագուրդ տալու պահանջից, որը նաև կապված է օգտակարության հետ:

Դավիթ Անհաղթը հայոց մեջ տրամաբանության գիտության հիմնադիրն ու նախակարապետն է: Նրա մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ ի մի հավաքեց, համակարգեց իր ձեռքի տակ եղած ողջ նյութը և ստեղծեց տրամաբանության գիտությունը: Անհաղթը մերժում է մարդու արարչագործության կրոնական վարկածը, նա մարդուն համարում է օրգանական մատերիայի փոփոխության ու զարգացման արդյունք:

Հայրենիք վերադառնալուց հետո Դավիթ Անհաղթը գրում է իմաստասիրական ու մեկնողական մի շարք աշխատություններ, թարգմանություններ է կատարում, միաժամանակ մանկավարժական գործունեություն է ծավալում, դասավանդում է դպրոցներում, աշակերտության համար հորինում է բանաստեղծություններ ու հանելուկներ:

Անհաղթն ապրել է մինչև խոր ծերություն, մահացել և թաղվել է իր հայրենի Հարք գավառի Հերեթ գյուղում: Դավիթ Անհաղթի ծննդյան օրվանից անցել է ավելի քան մեկուկես հազարամյակ, սակայն մեծ հայրենասերի, իր ժողովրդի կրթության գործի նախանձավորի անունը դեռ շարունակում է ապրել մեր օրերի մարդկանց շուրթերին:

Կար-չկար մի թագավոր կար: Էդ թագավորը ժառանգ չուներ: Օր ծերության կանչեց վեքիլ-վեզիրին ու պատվիրեց.

— Ում դռանը իմ աքլորը ձեն ածի, թող նա էլ թագավոր դառնա:

Մի ժամանակ հետո թագավորն հոգին ավանդեց, տարան առոք-փառոք թաղեցին: Որ թաղեցին պրծան, ետ եկան ու, ոնց որ թագավորը պատվիրել էր, աքլորին բաց թողին քաղաքով մեկ: Աքլորը դես ընկավ, դեն ընկավ, վերջը գնաց կանգնեց մի մեծ աղբակույտի վրա ու կոկորդով մեկ ձեն ածեց.

— Ծուղրուղո՜ւ-ո՜ւ-ո՜ւ...

Էս ում աղբակույտն է, ումը չի՝ Ղազարոսինն է: Բերին, ոնց որ թագավորը կամեցել էր, Ղազարոսին թագավոր կարգեցին:

Ղազարոս, բոլորն էլ գիտեին, որ քյուլհան էր, քաղաքի աղբատարը: Ունեցած-չունեցածը մի խեղճ ավանակ էր

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

# Ղազա

ու ճլվտան մի սել: Աղբը քաղաքից դուրս տանելիս գնում էր էշի կողքից, գնում էր լուռ, գլուխը քաշ արած: Հարևան, դրկից նրա ձենը լսած չկային: Խոսքի մեջ էլ անունը չէին տալիս, ասում էին՝ «Էն անլեզու հայվանը»:

Ու հիմի էդ անլեզու հայվանը դարձավ թագավոր: Որ դարձավ թագավոր, սկսեց միտք անել.

«Հիմի աղբը, ո՞վ գիտի, ինչքան է կիտվել դռանը... Սարի չափ: Ու մեծ-մեծ ճանճերը պտիտ են տալի չորս բոլորը: Իսկ աղբը մի գլուխ բերում են, հա բերում... Ես էլ հրես թագավոր եմ դարձել, էլ ո՞վ պիտի աղբը դուրս տանի... Էն ավանակն էլ վայթե ինձ պես թագավորական կյանք է քաշում... Հարկավոր է գարի շատ ցանել, որ էշերը կարոտություն չըքաշեն... Հարկավոր է աղբը շատացնել, որ էշերը պարապ չմնան: Պարապությունը լավ բան չի... Հարկավոր է... Էհ, ի՞նչ իմանաս, թե էլի ինչ է հարկավոր...



Հազար ու մի հոգս: Չէ, թագավորական կյանքն էլ մի բան չի...»:

Էս մտքերի հետ էր, որ լուր բերեցին, թե պալատականներից մեկը գնաց էն աշխարհք: Գնաց՝ գնաց: Տարան թաղեցին: Որ ուզում էին մարմինը հողին հանձնել, Ղազարոսը նշան տվեց՝ սպասեն, կռացավ ու ինչ-որ բան ասաց մեռածի ականջին: Պալատականները զարմանքով իրար նայեցին. «Էս ի՞նչ բան է: Մեր թագավորը խոսում է մեռելների լեզվով: Տեսնես ի՞նչ ասաց»: Մեկ ուզեցին հարցնել թագավորին, բայց սիրտ չարին. տեսար՝ բարկացավ: Դե, իսկ թագավորի բարկությունն էլ ուրիշ տեսակ է լինում՝ թագավորական:

Երկար տվին-առան, վերջում մի աղվես պալատական էսպես խոսք ասաց.

— Ես սուտմեռուկի կտամ, ու որ տանեք ինձ թաղելու, կիմանամ, թե թագավորն ինչ ասաց:

# խոսքի հեքիաթը



Հավան կացան:

Մեկել օրը թագավորին լուր բերին, թե ֆլան պալատականն էլ արևը քեզ բաշխեց: Ղազարոսն էլի կռացավ մեռածի վրա ու ինչ-որ բան ասաց:

Գիշերով էդ պալատականին հանեցին հողից ու վրա պրծան:

— Հը, ի՞նչ ասաց:

— Ասաց. «Թե որ էնտեղ մեր աշխարհքից հարցնեն, կասես՝ Ղազարոսը թագավոր է դարձել: Ուրիշ բան չասես»:

Խելք-խելքի տվին, որ պարզեն, թե էդ խոսքը ինչ կարող էր նշանակել: Լույսը բացվեց, նորից գիշեր եղավ ու առավոտ, բայց թագավորական խոսքի միտքը էդպես էլ մութ մնաց:

Ասում են, մինչև էսօր էլ պալատականներն աշխատում են պարզել Ղազարոսի խոսքի գաղտնի խորհուրդը, բայց իզուր...

Նկարը՝ ԲԱԳՐԱՏ ԱՐԱՋՅԱՆԻ



ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆԻՆՆԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

# Խառը ժամանակներ

Մեր թվականության առաջին դարում Հայաստանում երկու շատ կարևոր իրադարձություններ կատարվեցին: Ամրացավ հայ Արշակունիների թագավորական տունը, որը Հայաստանում իշխեց մոտ 400 տարի, ամբողջ Մեծ Հայքում՝ մոտ 350 տարի: Ապա, առաջին դարում քրիստոնեությունը մուտք գործեց Հայաստան, հիմնադրվեց հայոց եկեղեցին, որը Արշակունիների թագավորության անկումից հետո հայոց մշակույթի և հասարակական կյանքի կենտրոն եղավ շատ հարյուրամյակներ:

Առաջին դարի սկզբին, Արտաշեսյան թագավորության անկումից հետո (1 թ.) մոտ 50 տարի Հայաստանում խառը ժամանակներ էին. հայոց գահի վրա արագ միմյանց էին փոխարինում այլազգի թագավորները: Արտաշեսյանները խնամիական կապեր ունեին մոտակա երկրների՝ Պարթևստանի, Պոնտոսի, Հրեաստանի, Վրաստանի, Ատրպատականի թագավորական տների հետ: Երբ հայոց գահը մնաց թափուր, այդ բոլոր թագավորական տները ձգտում էին իրենցից նշանակել հայոց թագավոր: Իսկ Հռոմը ծրագրում էր իրականացնել իր վաղեմի ցանկությունը՝ Մեծ Հայքը դարձնել հռոմեական կայսրության պրովինցիա (նահանգ): Հայերի համար հռոմեական տիրապետությունն անտանելի էր: Հայ իշխանները, ժողովուրդը մերժում էին հռոմեական տիրապետությունը: Հայոց ղեկավարները բարեկամական հարաբերություններ էին պահպանում պարթևների հետ, որոնց կայսրությունն այդ ժամանակ շատ էր հզորացել: Դեռևս մ. թ. ա. մոտ 248 թվականին Պարթևստանում թագավոր էր դարձել սկյութական պարն ցեղի առաջնորդ Արշակը, և այդպես հիմնադրվել էր պարթևական Արշակունիների թագավորական տունը: Ըստ որոշ տվյալների, դեռևս մ. թ. ա. II դարի երկրորդ կեսին Հայաստանում եղել է պարթև Արշակունիների իշխանություն (նախքան Տիգրան Մեծի գահակալությունը): Ինչ էլ եղած լինի, մի բան հաստատ է, որ պարթև Արշակունիները ազգակցական սերտ կապեր ունեին Արտաշեսյան տան հետ և միշտ էլ լավ հարաբերության մեջ էին հայերի հետ, իսկ նրանց մի ճյուղը լինվին հայացավ: Եղան դեպքեր, երբ պարթև Արշակունիներն էին հայոց թագավոր նշանակում, երբեմն էլ հայ Արշակունիներն էին Պարթևների թագավոր կարգում:

Հռոմը ոչ մի կերպ չէր ուզում, որ Հայաստանի գահի վրա հաստատվեն Արշակունիները, և Հայքում թագավոր էր կարգում իր մարդկանց (դրածոներին):

Առաջին դարի սկզբին Արտաշեսյան վերջին թագավոր Տիգրան IV-ի զոհվելուց հետո նրա քույրը՝ Էրատոն, որ գահակից թագուհի էր, հրաժարվեց գահից: Հռոմի Կայսր զորավարը, որ Հռոմի Օգտավիանոս Օգոստոս կայսեր թոռն էր, իր լեգեոններով մտավ Հայք և հայոց թագավոր հռչակեց Ատրպատականի Արիոբարզան թագավորին: Սա Հռոմի կամակատարն էր: Այդպիսով, փաստորեն Հայաստանը կցվում էր Ատրպատականին՝ Հռոմի գերիշխանության տակ: Հայ իշխանները ապստամբեցին Հռոմի դրածոյի դեմ, Կայսը ճնշեց այդ ապստամբությունը, բայց հայ իշխաններից զորավար Ադոմը սպանեց հռոմեացի հրամանատարին:

Արիոբարզանի մահից հետո Հռոմը Հայաստանի գահին նստեցրեց նրա որդի Արտավազդին: Հայ իշխանները սրան ևս սպանեցին: Այս անգամ Հռո-

մը Հայաստանի թագավոր հռչակեց Հրեաստանի հայտնի թագավոր Հերովդես Առաջինի թոռ Տիգրանին (հերովդյանները ազգակցական կապեր ունեին հայոց Արտաշեսյան թագավորների հետ)։ Սա Տիգրան V-ն էր։ Բայց նա էլ երկար չիշխեց Հայքում։

Այսպես, հայերը ոչ մի կերպ չէին համակերպվում հռոմեական տիրապետությանը, չէին հանդուրժում Հռոմի դրածոներին։ Այդ բախտին արժանացավ նաև Հռոմի մի այլ դրածո՝ Վանոնը (թագավորել է 11—16 թվականներին)։ Ապա՝ 18—34 թվականներին Հայաստանում թագավորեց պոնտացի Զենոնը, որը հայերին հաճելի լինելու համար իրեն անվանեց Արտաշես (նա ևս ազգակցական կապեր ուներ հայ Արտաշեսյանների հետ)։

34 թվականին Հայաստանում գահ բարձրացավ Արշակունի թագավոր Արշակ անունով, որին նաև Սանատրուկ էին կոչում։ Փաստորեն այս ժամանակ է Հայքում սկիզբ առնում Արշակունիների տիրապետությունը։ Արշակ-Սանատրուկը Հայոց Միջագետքում կառուցեց Մծբին քաղաքը և դարձրեց այն իրեն մայրաքաղաք (ավերակները գտնըվում են Սիրիայի Ղամշլի քաղաքի մոտ)։ Այս թագավորին հայ իշխանները, հայերն առհասարակ, պաշտպանում էին, քանի որ անկախ քաղաքականություն էր վարում։ Բայց Հռոմը դեմ էր նրան, ուզում էր հայոց գահին նորից նստեցնել իրեն հնազանդ մեկին։ Եվ վրաց թագավոր Միհրդատի հրահրած դավադրությամբ հռոմեացիները սպանել տվեցին հայոց Արշակունի այս թագավորին։

Վրաց թագավորները, որոնք ևս ազգակցական կապ ունեին հայոց Արտաշեսյան տան հետ, Հռոմի օգնությամբ, նույնպես ուզում էին տիրանալ հայոց գահին։ Նրանք իրենց նաև համարում էին Արշակունի։ Վրաց Փարսաման զորավարը ալանական (օսական) և բուն Աղվանքի (Քուռ գետից ձախ) վարձու զորքերով մտավ Հայաստան։ Կռիվներ եղան հայ-պարթևական և վրացիների ղեկավարած ալան-աղվանական զորքերի միջև։ Հռոմի Վիտելիոս զորավարի լեգեոնների օժանդակությամբ հաղթեցին վրացիները։ Շուտով (37 թ.) Հռոմը և Պարթևստանը դաշինք կնքեցին. Հա-



Հունարեն արձանագրություն Հայաստանում



յաստանի թագավոր հռչակվեց Հռոմի կամակատար վրացի Միհրդատը: Այդ ժամանակ Հռոմի կայսրն էր Տիբերիոսը: Նրան հաջորդեց Կալիգուլան, որը Միհրդատին Հռոմ կանչեց և աքսորեց: Ծուրջ 6 տարի Մեծ Հայքի տիրակալ եղավ հայոց նախարար Գիսակ Դիմաքսյանը: Սակայն Հռոմի նոր կայսրը՝ Կլավդիոսը վրաց Միհրդատին հռոմեական զորքով ուղարկեց Հայք: Գիսակ իշխանը հայկական զորքով դիմադրում էր հռոմեացիներին, բայց պարտվեց, հայերի երկպառակության պատճառով, և Միհրդատը կրկին դարձավ հայոց թագավոր: Նրա եղբայրը և աները՝ վրաց թագավոր Փարսամանը իր որդի Հռադամիզդին մեծ զորքով ուղարկեց Հայաստան: Հռադամիզդը Գառնի ամրոցում իր հորեղբորը՝ Միհրդատին, և քրոջը (Միհրդատի կնոջը) խեղդեց գորգերի տակ: 51 թ. հայոց գահ բարձրացավ այդ Հռադամիզդը: Հռոմեական դրածո թագավորների օրոք Հայաստանի իրական ղեկավարը Հռոմն էր, որը Մեծ Հայքում նշանակում էր երկու պաշտոնյա՝ պրեֆեկտ (կուսակալ) և ցենտուրիոն (ոստիկանապետ): Սրանց հլու հնազանդ ենթարկվում էր դրածո թագավորը: Հայաստանի քաղաքներում կային հռոմեական զորքեր (կայազորներ):

Նույն 51 թվականին պարթևների թագավոր դարձավ Վաղարշ Առաջին Արշակունին: Սա հզոր թագավոր էր: Պարթևները նախքան այդ էլ իրենց երկիրը ազատում էին հունական (հելլենիստական) մշակույթից, հունարենի փոխարեն փորձում էին գրավոր և բանավոր գործածել իրենց լեզուն՝ պահլավերենը (համարվում է միջին պարսկերեն): Վաղարշը այդ գործն ավելի մեծ եռանդով շարունակեց: Նա ձգտում էր նաև իր եղբորը՝ Տրդատ Արշակունուն, կարգել հայոց թագավոր: Դրան համաձայն էին հայոց իշխանները:

Հայքի խառը ժամանակներն անցնում էին, թեև նրանց հետևանքը ծանր եղավ հայոց համար: Անընդհատ պատերազմները, գահակալների փոփոխումները հոգնեցրել էին բոլորին: Իսկ ամենավատն այն էր, որ այդ ժամանակներում Մեծ Հայքից անջատվեցին Հայոց Միջագետքը՝ հարավում և Գողերձականը՝ հյուսիսում:

(շարունակելի)



Ամեն առավոտ, շատերի նման, պայուսակը վերցնում, բռնում էր դպրոցի ճանապարհը, բարևում համադասարանցիներին, գրավում իր տեղը: Դասավարտի զանգից հետո գնում էր տուն, տնից՝ երաժշտական դպրոց: Աթոռը մոտ էր քաշում դաշնամուրին և փոքրիկ, մոմագույն մատները ճերմակ ստեղների վրա սահեցնելով՝ նվագում էր այն մեղեդին, որ ծնվել էր պատահական, հանկարծակի... Այժմ նրա համադասարանցիները՝ Երևանի № 162 դպրոցի աշակերտները, ծնողներն ու հարազատները սիրով ու տխրությամբ են հիշում վաղամեռիկ, շնորհալի աղջկա անունը. ՉԻՆԱՐԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ:

## Երազանք

Երազում Մասիսի վրա լինեի,
Նրա լանջին, թարմ կանաչին փարվեի,
Եվ ականջս նրա սրտին հպեի,
Սրտի զարկից անուշ-անուշ քնեի:

Առավոտյան արևի հետ զարթնեի,
Ու վազելով ես գագաթներն ելնեի,
Պարաններով փոքրիկ ճոճքեր կապեի,
Մի գիշեր էլ ճոճքի միջին քնեի:
Երազում ես Մասիսի վրա լինեի,
Ճոճքի միջին անուշ-անուշ քնեի,
Ինձ օրորեր Երևանի զով քամին,
Որն ամեն օր համբուրում է իմ սարին:

## Վախս

Ահա գիշեր է, ահարկու գիշեր,
Ես վախենում եմ, դու ինձ մոտ նստիր,
Գազանային թաթ՝ կոկորդիս սեղմած,
Ես վախենում եմ, գրկիր, ինձ գրկիր:

Մայր իմ սիրելի, բազմատանջ, տրտում,
Քո նուրբ ձեռքերով փարվիր քո որդուն,
Մեկն զգույշ դուռն է բախում իմ կյանքի,
Մայր իմ սիրելի, փրկիր ինձ, փրկիր:
Գիշեր ու թախիծ կա քո աչքերում,
Դու մի վախենա, առավոտ կգա:

Դուռը մի բանա, ես չեմ ուզենա,
Որ քո նուրբ դեմքը կնճիռ ունենա:
Մայր, մի արտասվիր դու կարոտատենչ,
Արցունքդ մնաց կնճիռներիդ մեջ...

## Ես կուզենայի

Ես կուզենայի շատ շուտ մեծանալ
Ու մեծ հասակում քեզ ունենայի,
Ալեհեր գլխով, կնճռոտ դեմքով
Ու քո մեծ հոգով մայր ունենայի:

Ես կուզենայի շատ շուտ մեծանալ,
Մոլեգնած կյանքում չմոլորվեի,
Խարխուլ նավակով ալիքոտ ծովում
Փարոսիդ լույսով առաջնորդվեի:

Մայրիկ, իմ մայրիկ, ես կուզենայի
Գտնել նոր խոսքեր, քեզ երգել անգին,
Այնպես, ինչպես դեռ մեկը չի երգել,
Ոչ մի զավակ իր անուշ մայրիկին:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ







# Վահան Թեքեյան
## 1878—1945

## Կ'անձրևէ, տղաս

Կ'անձրևէ, տղա՛ս... Աշունը թաց է,
Թա՛ց աչքերուն պես խեղճ խաբված սիրույն...:
Պատուհանն ու դուռը գընա գոցե
Եվ դեմըս երկուր նստիլ վեհագույն:

Լռության մը մեջ...: Կ'անձրևէ, տղաս...:
Կ'անձրևէ՞ երբեմն հոգիիդ մեջ ալ,
Կը մսի՞ սիրտըդ, և կդողդողա՞ս՝
Խորհելով պայծառ արևին անցյալ,

Դռան մը ներքև գո՛ց ճակատագրին...:
Բայց կուլաս, տըղա՛ս... Մութին մեջ հանկարծ
Ծանըր արցունքներ աչքեդ կը գլորին...

Լա՛ց անմեղության արցունքը անդարձ,
Լա՛ց չգիտնալով, խեղճ, անգետ տղա՛ս,
Խե՛ղճ որսը կյանքին, ա՛հ, լա՛ց, որ մեծնաս...:

## Պիտի մոռնանք

Պիտի մոռնանք մենք զմեզ, մեր վիշտն ու վերքն ահագին,
Պիտի մոռնանք, այնպես չէ՞, երբ մեր երկիրը դառնանք,
Ու աշխատի՛նք ունկընդրել տակավ զարնելն իր սրտին
Եվ մենք ու ան իրարու քիչ առ քիչ ուժ տանք ու կյանք...

Պիտի մոռնա՛նք անսահման մեր կսկիծին հետ նաև
Մեր հոգիները այրող Ատելությունն անսահման,
Ու մեր աչքերը պայծառ ու մեր քայլերը թեթև
Պիտի ըլլան վերստին՝ մեր հողին վրա մայրական...

Մարդոց չարիքը մեզի և քո չարիքդ, Աստված իմ,
Պիտի գա օր մ'ուր այլևս պիտի կրնանք չհիշել,
Պիտի կրնանք մենք նորեն երգե՛լ, սիրել անարգել...

Ա՛հ, դեռ, գիտե՛մ, կանուխ է, զի բախտն է դեռ ոխերիմ...
Սակայն, ո՛վ Տեր, մոտեցո՛ւր այն առավոտն ուր նորէն
Պիտի կրնանք մեզ օրհնե՛լ հոգիներուն մեր խորեն...

ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

# Հողը մերն է, վոնը՝ նույնպես

ՀԼԿԵՄ Ղափանի շրջկոմի քարտուղար Արթուր Նահապետյանը շատ էր ըղձում, որ եղանակները այդպես կըտրուկ փոխվեցին և մենք չենք կարող տեսնել վաղ աշնան զուլալ աղջամուղջների մեջ հալվող-տարալուծվող անտառի բոսոր գույները, դեպի Վահանավանք գնացող մաշված, գողտրիկ արահետները, որոնք ամռան տապին միշտ զով են ու կարմիր՝ ոտքի տակ ընկած, ճխլված մոշի ալվան պտուղներից:

Ես ներքուստ նեղվում եմ, որ Արթուրը մեզ հյուրի տեղ է դրել, մի բուռ Հայաստանում ի՞նչ հյուր, որ ծայրն էլ գնաս, տանտեր ես, տաքն էլ, ցուրտն էլ, լավն ու վատն էլ քոնն է:

— Չէ,— մեղմ առարկում է Արթուրը,— այ, եթե մի լավ բան անեք մեր շրջանի համար, այն ժամանակ միայն իրավունք կունենաք այդպես մտածելու: Սա մեր չգրված օրենքն է:

Խամրած ու խոնավ է շուրջը ամեն բան, մռայլ են գետի ջրերը, և ափամերձ փողոցի բարեկարգ մայթերն ու զինվորների պես կանոնավոր շարված էլեկտրասյուները ընկղմված են սառը, պըղընձագույն լույսի մեջ:

— Այս փողոցը տրիկոտաժի ֆաբրիկան է բարեկարգել, իրենք էլ բծախընդրորեն հետևում են, որ իզուր չփչանա, չկոտրվի որևէ բան, թեև, ասեմ, մեզ մոտ հենց այնպես ջարդելու, փչացնելու մոլություն չկա, ղափանցին նախանձախնդիր է իր ունեցածի հանդեպ:

— Որքան հասկանում եմ, այդ սերը հասնում է ֆանատիզմի:

— Տեսակի խնդիր է, ինչ ասեմ, այդ սերը մարդկանց ետ բերեց, ու տարիներով լքված Ծիկահողը վերստին կենդանացավ: Եթե դնեին կշեռքի նժարին, ընդանկան է՝ սառը տրամաբանությունը կըհաղթեր հօգուտ բարեկեցության, ու լուսավոր քաղաքների տաքուկ կյանքը ոչ ոք չէր թողնի, գար այստեղ:

— Շատ եմ լսել Լեռնաձորի դպրոցի մասին:

— Ագարակում էլ հիշատակելու արժանի շատ բաներ կան:

Արթուր Նահապետյանը չէր սխալվում: Ավելի ուշ ես նրանից շնորհակալ պիտի լինեի Ագարակի դպրոցի երիտասարդ տնօրեն Սոս Դավթյանի հետ ծանոթանալու համար. այդպիսի մի հանդիպում բավական է, որ համոզվես, թե ինչքան կարևոր է մի մարդը այս հողագնդի վրա և հատկապես որքան կարևոր է Սոս Դավթյանի գոյությունը այս փոքրիկ գյուղում, և ինչքան տխուր կլինի գյուղն առանց սիրելի ուսուցչի:

— Ինչ գիտեք, որ կարող է գնամ գյուղից,— ասում է Սոս Դավթյանը:

— Ենթադրում եմ: Այս տարի 20 աշակերտ ունեք, եկող տարի՝ 14, առաջիկա 7—8 տարում նվազելու, հասնելու է 10-ի: Տասը աշակերտով ի՞նչ դպրոց:

Ընդարձակ աշխատասենյակում միանգամից խոր լռություն է իջնում, մեզնից ոչ մեկը բան չի գտնում ասելու, հետո Սոս Դավթյանը գրասեղանի դարակից աշակերտական երկու տետր է հանում, դնում իր առաջ:

— Երեք տարի առաջ 42 աշակերտ ունեինք, իսկ հիմա՝ կեսով պակաս: Տնե-

րի շատությանը մի նայեք, մեծ մասամբ ամառանոցներ են: Այստեղից հեռացածները չեն կարողանում կտրվել իրենց հող ու ջրից, տեսնո՞ւմ եք, ինչ գեղեցիկ տներ են սարքել, շոգերին գալիս, օդ են շնչում: Նրանց էլ մեղադրելու չի, գյուղում աշխատանք չկա, մնան ի՞նչ անեն, ինչո՞վ զբաղվեն:

Անկրկնելի գեղեցիկ է Ագարակը՝ անտառների համատարածի մեջ, գողտրիկ մի անկյունում: Առանձնատներն իրարից բավական հեռու են կառուցված, այդ պատճառով գյուղն ընդարձակ է երևում, և դժվար է հավատալ, թե այն երբևէ կամայանա: Նայում ու չեմ հասկանում այստեղից հեռացողներին, նրանց հոգին այս անսահմանությունից ինչպես է գնում, տեղավորվում քաղաքների հաշված քառակուսիների մեջ:

— Մի քանի օրով հյուր եկողի սովորական ոգևորություն է, դարդ անելը չի փրկի, կոնկրետ գործ է պետք, որ վաղը հաջորդ սերունդը այս տխուր փաստի առաջ չկանգնի:

Ես տեղնուտեղը հիշում եմ նախորդ օրվա մեր խոսակցությունը Ղափանի տրիկոտաժի ֆաբրիկայի տնօրեն Դերենիկ Մարգարյանի հետ: Նա ասում էր, որ թեև իրենց մասնաճյուղերը գյուղերում վնասով են աշխատում, բայց շատ կարևոր բարոյական խնդիր է իրականացվում՝ բնակչությանը տեղերում պահելու, և այդ գյուղերը գնալով շենանում են:

— Գուցե տրիկոտաժի մի արտադրամաս էլ այս գյուղում բացեք:

— Տեսնենք, մի բան կմտածենք,—մըտահոգվում է շրջկոմի քարտուղարը:

Իսկ ահա, ապագա սերնդին հողի հետ կապելու շատ ավելի լուրջ միջոցներ է իրականացնում Սոս Դավթյանը՝ իր քըսան աշակերտների հետ: Միայն դասը սերտել-սովորելով այստեղ չես ապրի. հողի, անտառի, անասունի լեզուն պետք է սովորես, որ նրանք էլ քեզ պահեն, քեզնով՝ երկիրը պահեն, այլապես հողը կօտարանա, կխռովի, և հանկարծ կըպարզվի, որ գյուղը քո տեղը չի: Երևի այսպես է մտածել Սոս Դավթյանը, երբ հիմնադրել է դպրոցական ֆերման: Հավ ու ճագար են պահում-խնամում աշակերտները, անցյալ տարի 2000 ձու և 150 կգ միս են հանձնել, և դպրոցն այդ եկամուտներով անցել է անվճար սննդի, երեխաները օրը մի անգամ ձրի ճաշում են բուֆետում:

— Անցյալ տարի ձմռանը խոտի հարցը չկարողացանք լուծել: Ստիպված ճագարները բաժանեցինք տների միջև, իսկ գարնանը մեզ վերադարձրին փարթամ ու գիրացած:

Սեղանին դրված կապույտ տետրակներում հաշվապահական նշումներ են. ո՞ւմ, ե՞րբ, ի՞նչ, որքա՞ն է մթերք վաճառվել և փողն ինչի համար է ծախսվել: Դպրոցի ետևում ֆերմաներն են՝ մաքուր, առանձնացված բներով: Դեպի աջ՝ ուսումնափորձնական հողամասն է, ուր ամռանը ցանում են բանջարեղեն ու տարբեր տեսակի կանաչիներ:

— Մի միտք ինձ ոչ մի կերպ հանգիստ չի տալիս: Այ, տեսնո՞ւմ եք, այն նորակառույց շենքերը:

Մենք կանգնած ենք դպրոցի ետևում, մեր դիմաց ձորն է, որն հիմա ափեափ լիքն է մառախուղի թանձր շերտով: Ծառերի մերկացած, գորշ սաղարթներից երևում են տուֆակերտ, երկհարկանի երկու շենքեր:

— Մեր ուսուցիչների տներն են: Ջեռուցումը դպրոցից են ստանում: Կաթսայատունը ահա այստեղ է, շենքին կպած: Տարածությունը, որով անցնում են խողովակները, տաքանում է, կարելի է հանգիստ փակել ու ջերմոց դարձնել: Ձմռանը թարմ կանաչի ու բանջարեղեն կունենանք:

Մենք իսկույն աշխուժանում ենք, ամեն մեկս իր առաջարկն է անում, թե ինչը ինչպես կարելի է անել:

— Մեկը հարցնի, ախր ո՞ւմ հետ եմ անելու,— իսկույն էլ տխրում է տնօրենը,— եկող տարի 14 աշակերտ եմ ունենալու, մտադաշ երեխեք: Այ, եթե դըպրոցը տասնամյա լիներ, երեխաները մեծ լինեին, ամեն ինչ ուրիշ կերպ կլիներ: Թե չէ ութը ավարտում, գնում են, չես էլ հասցնում դժվար աշխատանքիդ պտուղը վայելել:

Տարօրինակ է: Չէ՞ որ դպրոցն ունի տասնամյակ բացելու բոլոր հնարավորությունները: Ուսուցիչներ էլ կան՝ 11 մասնագետ: Ուսուցչի տուն՝ բոլոր հարմարություններով: Նորակառույց, հրաշալի տիպային շենք՝ ազատ, լուսավոր դասասենյակներ, մարզական ընդարձակ դահլիճ, արհեստանոցներ, բուֆետ, գրադարան: Ի՞նչ իմաստ ունի աշակերտներին այստեղից ուղարկել հարևան գյուղ, այն դեպքում, երբ Ագարակի դպրոց են

հաճախում նաև Խնդրանց գյուղի երեխաները:

Իսկ դպրոց մտնողը չի կարող չնկատել մուտքի ու դասասենյակների անտվոր դռները, որոնք, պարզվում է, սարքվել, հղկվել ու ձևավորվել են փայտամշակման արհեստանոցում՝ երեխաների ձեռքով ու երևակայությամբ: Դրանք ամենասովորական դռներ են, որոնք երեսպատվել են չորացած ծառի օղակաձև, բարակ շերտերով, այնուհետև հղկվել, հարթեցվել են ու լաքապատվել:

— Մենք կարող ենք ամբողջ շրջանի մանկապարտեզների համար դռներ սարքել, միայն թե շինանյութ տան: Կարելի է որպես հումք օգտագործել կոտրած, դեն նետված դուռ ու նստարան, պրոբլեմ չկա, միայն թող մեզ հնարավորություն տան, մեծ սիրով կանենք:

Կարգ ու կանոն, լուսավոր հանգրստություն, ծաղիկներ, առարկայական ու ընթացիկ պատի թերթեր, ձևավորումներ պատերին, դասասենյակներում, ամենուր... Եվ դժվար է մտածել, թե այս ամենը կարելի է անել քսան աշակերտով, քսան աշակերտի համար: Այս տղաները կարող են հող մշակել, անասուն խնամել, շենք կառուցել, այսինքն՝ նախ տան իսկական տղամարդ լինել, մի բան, որ չես կարող սովորել ոչ մի դասագրքից. դասագիրքը միշտ չէ, որ օգնում է բացահայտելու ինքդ քեզ, քո կարևորությունը կյանքում, մեծ աշխարհի քո փոքր ու թանկ այս անկյունում: Եվ ես վստահ եմ, որ Սոս Դավթյանի աշակերտները չեն հեռանա գյուղից, քանի որ իրենք են իրենց ստեղծածի տերը, հողը իրենցն է, և տունը՝ նույնպես:

Դպրոցից դուրս գալիս նոր միայն նըկատում եմ ցուցանակը՝ Ագարակի Դավիթ-Բեկի անվան ութնամյա դպրոց: Ես կարդում եմ ու մտածում, թե ինչ կաներ Դավիթ-Բեկ Մեծ զորավարն առանց իր զինվորների, և իսկույն էլ ինձնից հեռացնում եմ այդ տխուր պատկերը: Եվ հանկարծ հեռու-հեռավոր սարերից, մըթին անտառներից ու խոր, մառախլապատ ձորերից լսում եմ բյուր զանգակների ղողանջները, որոնց լեզվակները Սոս Դավթյանի քսան աշակերտներն են. զանգերն հնչում են խուլ ու տագնապալի, այնպես, ինչպես շատ ժամանակ առաջ հնչեցրել էր Դավիթ-Բեկ Մեծ զորավարը՝ իր կորած զինվորներին փընտրելիս...

**ՌՈԶԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ**

# Վայրի ծաղիկ

**Վայրի ծաղիկ, սիրուն ծաղիկ,**
**Նուրբ ու նախշուն, հեզիկ-նազիկ,**
**Թերթիկներիդ ցող ու շաղիկ,**
**Ինչքան լավն ես, ինչքան սիրուն,**
**Ժայռերի մեջ՝ մի ողջ գարուն:**

**Մի վախենա դու ինձանից,**
**քո ցողունը ես չեմ ջարդի,**
**քո պսակը ես չեմ պոկի,**
**վառ գույներով երանգ-երանգ,**
**ապրիր խաղաղ երկնքի տակ:**

**Ժայռերի մեջ բուսած ծաղիկ,**
**նուրբ ու սիրուն, հեզիկ-նազիկ,**
**թերթիկներիդ ցող ու շաղիկ,**
**ապրիր այդպես ժայռերից վեր**
**ու զարդարիր երկիրը մեր:**

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ

# Ջաղացպանի աղջիկը

Մի աստվածային ջաղաց էր թվում
Երկինքն աստղածով, երկինքն աստղային,
Եվ ես՝ արարիչ մեծ ջաղացպանի
Դուստրը դեռ թախծող, դուստրը քերկրային,
Ես ոսկեորիկ մաղով երկնքի
Աստղերն էի լուռ մաղում հրացոլ,
Մանրիկ աստղերը ցած էին թափվում
Այս հրաշքաշեն մաղի անցքերով,
Ցած էին թափվում հատիկներն ամեն՝
Որպես ասուպներ, մոլորվում, մարում,
Եվ հոգուս մաղի վրա լռելյայն,
Մնում էին լոկ արեգակնային
Շնորհ ունեցող աստղերը միայն...
Հավիտենության մեծ մաղից ահա,
Մի կախարդական ջաղաց էր թվում
Երկինքն անսահման,
Եվ լուռ աստղերը—ցորյանի հատիկ,
Այդ կախարդական ջաղացի միջով
Դառնում էին լույս և լուսո փոշի,
Եվ ես՝ արարիչ մեծ ջաղացպանի
Դուստրն՝ Արշալույս, արևածագի
Երգ ու նվագի այն շարականը՝
Առավոտյան այն աղոթքը վերին,
Որ մեր բարբառով կոչվել է հավետ
«Առավոտ լուսո», «Առավոտ հուսո»...

# Հարցազրույց հողի հետ

Այդ ես եմ նկարել երկնի մագաղաթին
Հայոց լեռնաշխարհի խորհրդավոր շղթան,
Իմ վրձինն է նրան տվել այդքան թախիծ,
Ծաղկավորել վսեմ հովիտները գողթան:

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



Հոգումս եմ թաթախում վրձինը երազող,
Տեղավորում այնտեղ էությունս ամբողջ,
Բարդիներն են կախվել թուխ ամպերի վզով,
Յոլում են երազիս կաթնաղբյուրները զով:

Երբ ինձ հարց են տալիս հավքերն անտառի,
Դալլալլների գունեղ շեշտադրումով այսօր,
Թե հաշվումներ անենք՝ ամեն ծառ ու ծաղկից
Կստացվի՞ մեր հողի պատկերը լուսավոր...

Այո, ասում եմ ես, հարցրեք այս խոտերից,
Անմոռուկից՝ ծաղկած, կեչու ոտքերի մոտ,
Այս աստվածաշնորհ կանաչող թփերից,
Որ փարվում են լույսին ամեն մի առավոտ...

# Երազացուլք

Գարնան կանաչ արտեր, արտեր անեզրական,
Արարատյան հովտում փռած աստղ ու երազ,
Լազուր երկնքի տակ կաթնաղբյուրներ որքան,
Ուրախության կապույտ գմբեթներ են անհաս:
Սաղմոսաձայն հասկեր արտում ցողաթաթախ,
Տերեփուկներ ազնիվ, փռված արտի եզրին,
Գալու է աշխարհում լուսաբաց մի խաղաղ,
Անօրինակ, ինչպես քարտեզները մեր հին:
Լուսո արարչական ոգին մեր զորավոր
Որոնում է ճամփա՝ հրաշք աստղերն ի վեր,
Յուրօրինակ, ինչպես խիղճը մեր դարավոր,
Անկրկնելի, ինչպես հանճարը մեր հուրհեր:
Նայիր, ճախրում են դեռ աղավնիներն անմեղ,
Իրենց թռիչքի մեջ լույս են դառնում, աղոթք,
Նայիր դու էլ այսօր երկինքներին, այնտեղ,
Ուր լուսաստղն է փնտրում սիրո տաք առավոտ...



ՄԻԽԱՅԻԼ ՌՈՇՉԻՆ

# Ինչ է նշանակում «ինտելիգենտ» լինել



Հիմա շատերն են ուզում ինտելիգենտ լինել: Դուք, հավանաբար, լսել եք, որ այդ բառը ծագել է լատիներեն «ինտելեկտ» (այսինքն՝ խելք, մտածելու ունակություն) բառից:

Կյանքն ու կենսափորձը հաստատել են. արտաքնապես մտավորականության դասին պատկանելը համեմատաբար հեշտ է, իսկ այ, էությամբ ինտելիգենտ լինել՝ բոլորովին այլ բան է, քանի որ դա, ինչպես մեծերը կասեին, ոչ թե հասարակական, այլ, ավելի շուտ, բարոյական հասկացություն է: Ո՞րն է գաղտնիքը. եկեք պարզենք:

Ո՞ւմ ենք մենք ինտելիգենտ համարում: Նրանց, ովքեր քաղաքավարի են, նրբանկատ, լավ դաստիարակված, ճի՞շտ է: Այդ դեպքում՝ գուցե բավական է սովորեն չկոպտել ծերերին, հարկ եղած դեպքում վերարկու մատուցել կանանց, և ամեն բան, այսպես ասած, կարգի՞ն կլինի: Հազիվ թե: Հիշենք՝ կինոյում ու գրքերում որքան նրբակիրթ սրիկաների ու հմայիչ չարագործների ենք հանդիպել: Ուրեմն, թեև քաղաքավարությունն ու նրբանկատությունը ինքնըստինքյան լավ հատկանիշներ են, սակայն դրանք չեն էականը: Գուցե նշանակություն ունի հատուկ դաստիարակությո՞ւնը. իհարկե, սա շատ կարևոր հանգամանք է, սակայն հայտնի է, որ դրա համար առանձին դպրոցներ կամ դասաժամեր գոյություն չունեն: Եվ, այսուհանդերձ, ամեն ոք հեշտությամբ կարող է ինտելիգենտ լինել՝ այս բառի լայն իմաստով:

Հիմա բոլորը ձգտում են բնության բարեկամը դառնալ. հասկացել են, որ անհրաժեշտ է այն խնայել, պահպանել: Կարելի է առանց երկար-բարակ մտածելու ջուրը նետել պոլիէթիլենե տոպրակը, իսկ հետո կպարզվի, որ երեք հարյուր տարի ապրած ծովային մի կրիա՝ մեդուզայի տեղ դնելով, այն կուլ է տվել ու տեղնուտեղը սատկել: Դեռ երեկ մենք անհոգաբար դաշտային ծաղիկներից երփներանգ մեծ փնջեր էինք կապում, ոտքով քանդում էինք մրջնանոցը, դաժանորեն քարկոծում անմեղ լորտուին: Այժմ մենք արդեն գիտենք. այդպես չի կարելի: Եթե հարկ է, որ խնայվի յուրաքանչյուր ծաղիկ, առվակ, թուփ, բզեզ ու ճնճղուկ, ինչպիսի՞ն պիտի լինի ուրեմն մեր վերաբերմունքը մարդու նկատմամբ, որ բնության զարդն է համարվում:

Մենք շատ հաճախ անհաղորդ ու անտարբեր անցնում ենք մեկս մյուսի կողքով, ինքներս մեզնով զբաղված՝ ար-

մունկներով հրմշտում ենք մյուսներին ու մի կարգին չենք էլ նայում մեր շուրջը: Մինչդեռ ինտելիգենտ մարդու համար այդ բանն անհնար է, և հենց դրանում է գաղտնիքը: Ուշադրությո՛ւն: Եղեք ուշադիր այն մարդկանց նկատմամբ, որոնց հետ առնչվում եք՝ լինի դա պատահական ուղեկից տրամվայում, թե ձեր հարազատ մայրը. սա է ինտելիգենտ մարդու վարքագծի բանաձևը:

Եթե որպես ելակետ ընդունենք այն, որ յուրաքանչյուր մարդ նույնչափ բարդ է, հետաքրքիր, խորն ու զգայուն, որչափ ինքներդ, ապա դուք ոչ մի դեպքում չեք կարողանա նրան հենց այնպես տհաճություն, դառնություն, առավել ևս վիշտ կամ վիրավորանք պատճառել:

... Հիշիր. ուրիշի ստացած վերքը նույնքան ցավոտ է իր համար, որքան քեզ համար՝ քոնը: Փորձիր ոչ թե հարձակվել, այլ զիջել: Ոչ թե բռունցք անել, այլ՝ ձեռք պարզել: Ոչ թե հափշտակել, այլ նվիրել: Ոչ թե ունեցածը թաքցնել, այլ՝ կիսել: Ոչ թե գոռալ, այլ՝ ականջ դնել: Ոչ թե պատռել-անջատել, այլ՝ միացնել: Փորձիր և կտեսնես, թե ինչպես զարմանալի ու հաճելի մի զգացում, թափանցելով սրտիդ խորքը, ջերմացնում է այն:

Կյանքը լի է անակնկալներով ու պատահականություններով, և որքան էլ ջանանք՝ միևնույն է, անպախ մեզնից որևէ մեկին վիշտ կամ դառնություն ենք պատճառում և, գիտակցելով մեր արարքը, սկսում ենք տանջվել՝ ինչո՞ւ, ինչպե՞ս պատահեց այդ: Աշխատիր հենց թեկուզ հանուն քեզ՝ ուրիշին չվնասել:

Մի խնդրիր այն, ինչ ինքդ կարող ես անել: Մի անի ուրիշին այն, ինչ քեզ չես ցանկանա:

Մի ստիր: Ինտելիգենտ լինել՝ առաջին հերթին նշանակում է անկեղծ լինել: Մարդիկ, որպես կանոն, ստում են սեփական շահի համար, այնինչ, ինտելիգենտ մարդը չի կարող իր անձնական շահերն ամեն ինչից վեր դասել: Ուրեմն, մի՛ ստիր: Իհարկե, դա շատ դժվար է, բայց ասա ինքդ քեզ՝ այսօրվանից էլ ո՛չ մի սուտ: Որքան էլ հակասական թվա՝ դրանով իսկ դու բազում տհաճություններ կպատճառես և՛ ինքդ քեզ, և՛ ուրիշներին: Համապատասխան եղիր և հիշիր ամենակարևորը՝ չստել: Կեղծիքն ու վախկոտությունը մարդու երկու ամենազգլխավոր թշնամիներն են: Չէ՞ որ դու չես ուզում, որ քեզ խաբեն. դա այնքան վիրավորական է, ստորացուցիչ: Պատկերացրու դու հավատում ես, իսկ շուրջդ՝ կեղծիք է: Ուրեմն, սկսիր հենց քեզնից՝ ի՛նքդ մի խաբիր:

Ոմանք կարծում են, թե ինտելիգենտը նա է, ով ճանճին անգամ չի նեղացնի: Իսկ, անկեղծ ասած, հարկ կլինի նեղացնել խաբեբաներին: Հակառակ դեպքում, եթե կեղծիք ենք հանդուրժում, ուրեմն պիտի կուլ տանք նաև վիրավորանքը: Իհարկե, ինտելիգենտ մարդը հենց այնպես չի նեղացնի ճանճին, սակայն նա ընդունակ է զենքը ձեռքին պաշտպանել հայրենիքը, պաշտպանել թույլերին, ճնշվածներին, հանուն ուրիշների սեփական կյանքն անգամ չխնայել:

Գուցե սա արդեն չափազա՞նց է՝ հանուն ուրիշների զոհել կյանքը: Սակայն ինտելիգենտ մարդն այլ կերպ չի վարվում:

Ասա ինքդ քեզ՝ էս արդեն շատ եղավ: Լավ է՝ ապրեմ հանգիստ ու ապահով, ոչ մի տեղ չխցկվեմ, վտանգի չենթարկվեմ: Եվ պետքս էլ չի ձեր ինտելիգենտությունը, բարեկրթությունը, առանց դրա էլ յոլա կգնանք: Դե, ինչ կա որ, քեզ ոչ ոք չի ստիպում, բռնությամբ ոչինչ չի ընտացվի:

Մարդն ինքը միայն իր մեջ կարող է դաստիարակել, զարգացնել այն հատկությունները, որոնք թույլ կտան նրան իրեն ինտելիգենտ համարել: Այդ դեպքում միայն հարկավոր է զգուշանալ սեփական սրտից:

Այո, մարդկային սիրտն այնպես է կառուցված, որ արձագանքում է ամեն ինչին՝ ցավին ու վշտին, ուրախությանն ու դառնությանը, լինի դա ձեր անձնականը, թե ուրիշինը:

Ու եթե քո սիրտը անհանգիստ տրոփում է, արձագանքելով տեղի ունեցող իրադարձություններին, մի ստիր, թե այն լուռ է: Ինքդ քեզ մի՛ խաբիր. դա ստախոսության ամենավտանգավոր տեսակն է:

Ասացինք, որ ինտելիգենտ բառը ծագել է լատիներեն «ինտելեկտ» բառից, որ նշանակում է խելք: Սակայն, մեր կարծիքով «ինտելիգենտ» բառը հարկ է, որ առաջանար լատիներեն «կարդիո» բառից, որ նշանակում է «սիրտ»: Եվ, ըստ էության, այդպես ավելի՛ ճիշտ կլիներ:

Ռուսերենից փոխադրեց
ԳԱՅԱՆԵ ՄԿՐՏՉՅԱՆԸ



ԳՐԻԳՈՐԻ ԳՈՐԻՆ

# ԲԱՐԵՎ, ԱՆԴՐԵՅ

**Մինչև կյանքի վերջին րոպեն Անդրեյ Միրոնովը բեմի վրա էր: Նրա ընկերոջ՝ Գրիգորի Գորինի այս հոդվածը գրվել է Անդրեյի մահից առաջ:**

Իմ ու Անդրեյի ընկերությունը մոտ քսանամյա վաղեմություն ունի: Շաբաթվա մեջ մի քանի անգամ հանդիպում ենք, միասին աշխատում, միասին հանգստանում, զանգահարում իրար՝ ամեն օր: Նա իմ երեք պիեսների ռեժիսորն է, երկուսի մեջ հանդես է եկել որպես դերակատար: Ես այն հանդիսատեսներից եմ, որ ներկա են եղել նրա բոլոր թատերական ներկայացումների պրեմիերաներին, դիտել նրա բոլոր ֆիլմերը, հեռուստատեսությամբ ցուցադրված աշխատանքների մեծ մասը: Այդ աշխատանքներից շատերը ինձ դուր են եկել, շատերը՝ ոչ: Նա նույնպես հիացած չէ այն ամենով, ինչ գրել եմ ես: Այդ առիթներով հաճախ ենք վիճում, միմյանց վիրավորելու աստիճան, բայց, փառք աստծո, դեռ ոչ մի անգամ չենք գժտվել:

— Բարև՛: (Զանգահարում եմ Անդրեյին):

— Բարև՛:

— Լսիր, «Արվեստ» հրատարակչությունից «Գրողները դերասանների մասին» ժողովածուի համար ինձ խնդրել են քո մասին գրել: Դեմ չե՞ս...

— Ինչո՞ւ պիտի դեմ լինեմ:

— Հարցնողը ես եմ, դու միայն պատասխանիր: Եվ... ազնվորեն, հասկանո՞ւմ ես, հո չե՞ս կարող քեզ միայն գովել:

— Հույս ունեմ միայն հայհոյելով էլ չես սահմանափակվի:

— Կաշխատեմ: Ուղղակի մտածում եմ՝ գուցե չարժի՞, որ նման աշխատանք կատարի ընկերդ: Վերջիվերջո պրոֆեսիոնալ քննադատներ կան, նրանք կարող են ավելի անաչառ լինել:

— Ոչ միշտ...

— Ամեն դեպքում՝ աշխատում են լինել այդպիսին:

— Հենց դա է, որ ինձ դուր չի գալիս... Անկողմնակալությունը լավ է դատարանում, իսկ հանդիսատեսի առաջ՝ դահլիճում, ապրել է պետք:

— Ուրեմն ինչ, ճիշտ ես համարում, որ քո մասին ընկե՞րդ գրի:

— Այո, թեկուզ: Չգիտես ինչու, այդ





բանը հաճելի չի համարվում, երբ… ապրում ես, բայց երբ մեռա՜ր, այդ պահին են առանձին ընկերներ կամ «մի խումբ ընկերներ» գրում. «Մնաս բարով, ընկե՜ր», «Մնաս բարով, դերասա՜ն»: Աստվա՛ծ իմ, ինչքան ենք սիրում հրաժեշտները, մոռանալով, որ հանդիպումները ավելի են օգտակար:

— Դե լավ, քո մասին հոդվածը հենց այդպես էլ կվերնագրեմ՝ «Բարև, Անդրեյ»:

— Ինքնատի՞պ է…

— Իզուր ես ծաղրում, «բարև» բառը շատ տարողունակ է: Երբ մարդը քեզ «բարև» է ասում, նա քեզ կամենում է թե՛ ֆիզիկական, թե՛ հոգևոր առողջություն, կամենում է, որ խելամիտ լինես, ունենաս առողջ ընտանիք…

— Գրիգորի, ներիր, ես էլ չեմ կարող «բարևել», եկ հրաժեշտ տանք, վազելու եմ ներկայացման:

Անդրեյը անվերջ ինչ-որ տեղ է շտապում՝ ներկայացում, նկարահանում, համերգներ… «Մեղեդի» ստուդիայում՝ հերթական ձայնապնակի թողարկմանը, «Սոյուզմուլտֆիլմում»՝ հնչեցնելու հերթական կատվի ձայնը: Անսպառ էներգիա ունի, որ բնության պարգևն է:

Միրոնովը լույս աշխարհ եկավ բժիշկների նշանակված ժամկետից շուտ: Լույս աշխարհ եկավ, ինչպես որ պատշաճ էր ապագա դերասանին՝ ուղղակի բեմի վրա: Մարիա Վլադիմիրովնա Միրոնովան 1941 թվականի մարտյան այդ օրը խաղում էր մանրապատումների թատրոնում: Առաջին ներկայացումը՝ ցերեկայինը, հաջող անցավ, իսկ երկրորդի՝ երեկոյանի ժամանակ, նրան տեղափոխեցին ծննդատուն… Անդրեյը ըշտապում էր…

Դժվար էր գլխի ընկնել, որ տղան դպրոցն ավարտելուց հետո կարող է դերասան դառնալ: Հայրը՝ Ալեքսանդր Մենակերը, խրախուսում էր որդու մղումները: Իսկ մայրը՝ Մարիա Վլադիմիրովնա Միրոնովան, վերաբերվում էր կասկածանքով: Նա գիտեր, որ դերասանի մասնագիտությունը միայն արտաքուստ է թեթև ու տոնական, իսկ գործնակա-

նում՝ պահանջվում է ծանր, ամենօրյա կենտրոնացում ու ներքին կարգապահություն: Նա կարծում էր, որ այդ հատկանիշները իր Անդրեյը չունի. նույնիսկ որդու ուսանողական ներկայացմանը չգնաց՝ վախենում էր կասկածների մեջ համոզվելուց: Անփոխարինելի մի բանի նման նա սիրում էր թատրոնը: Անփոխարինելի մի բանի նման սիրում էր և որդուն. ինչպե՞ս կարող էր անկողմնակալ լինել: Քննություններից առաջ Մենակերը որոշեց որդուն ներկայացնել Ցիցիլյա Մանսուրովային, որ նշանավոր դերասանուհի էր և հրաշալի մանկավարժ: Համապատասխան դիրքով կանգնած, դղրդացնող ձայնով տղան արտասանում էր Ալ. Պուշկինի «Մնաս բարով, ազատ տարերք» բանաստեղծության տողերը, երբ ուժերի լարումից քթից սկսեց արյուն գալ: Ապագա ուսանողին անմիջապես պառկեցրին գահավորակին, և հայրն ու քննողը նետվեցին թրջոցներ դնելու նրա քթին: «Տղայի մեջ ավյուն կա,— պատշաճորեն նշեց Ցիցիլյա Մանսուրովան,— ճիշտ է, մնացած շնորհների մասին դժվար է այժմ դատել, սակայն սկզբի համար այսքանն էլ վատ չէ»: Գահավորակին պառկած Անդրեյը երևի թե մտածում էր, որ արվեստը դժվար ու արյունալի գործ է... Սակայն, մնացածը ավելի հեշտ գնաց՝ ուսումը թատերական ուսումնարանում, կինոյից՝ դերերի առաջարկներ, սատիրայի թատրոն և... միանգամից գլխավոր հերոսների դերեր: Բայց Միրոնովը, իր կարծիքով, դեռ «չէր գտել» իրեն: «Դասական անբավարարվածություն ինքդ քեզնից»,— ասում էր նա 20 տարի առաջ, սակայն այսօր էլ այդ խոսքերը նրա համար ոչ պակաս նշանակալից ու այժմեական են: Ես այս բանը վկայում եմ որպես նրա մերձավոր ընկերը: Էլ ո՞ւմ կյանքն է, որ արվեստի մեջ այդքան երջանիկ է: Վերջերս թեկուզ բեմում խաղացած դերերի ցանկը՝ Պրիսիպկին, Ժադով, Խլեստակով, Չացկի, Ֆիգարո, Դոն Ժուան, Մեկկի Մեսսեր, Լոպախին... Երբ Միրոնովն է հանդես գալիս՝ հանդիսասրահը լեփլեցուն է: Նրա ելույթների մասին խանդավառությամբ են գրում նույնիսկ Հարավսլավիայի, Իտալիայի, ԳՖՀ-ի, ԱՄՆ-ի թերթերը: «Հասարակության սիրելին»՝ այլ արտահայտություն չես կարող գտնել: Որտեղ էլ լինի՝ շուրջը ժպիտներ են, մարդիկ նետվում են ձեռքը սեղմելու, ինքնագիր վերցնելու: Նրա անունով թատրոնը ամեն օր տասնյակ նամակներ է ստանում, հեռախոսային կայանը կանոնավորապես փոխում է համարը, որպեսզի երկրպագուների ամբոխից հետքը որոշ ժամանակով թաքցնի: Սա մի՞թե համաժողովրդական սիրո խոստովանություն չէ: Իսկ ինչ է կատարվում Միրոնովի ներսում: Շատ դերեր է խաղացել, բայց ամեն մի նոր դեր ավելի ու ավելի դժվար է հաղթահարել: Ուզես-չուզես, ինչ-որ բաներ սկսում ես կրկնել: Իսկ դա վայրկենապես նկատվում է, և քո արժանիքները... սկսում են քո թերությունները դառնալ: Հյութալի նկարագիր ունեցող խառնվածքը, ձայնը, շարժումների բարեշնորհ ռիթմիկան, կրակոտ նվիրվածությունը... Դահլիճը հռհռում էր ու ծիծաղում: «Հաջողությունը դեռ ամեն ինչ չի նշանակում,— մտածում էր Անդրեյը,— ծափահարություններն դեռ կանխավարձն են այն ամենի, ինչ նոր պիտի անես»: Չէ՞ որ արտաքին հնարավորությունները արտաքին էլ տպավորություններ են ստեղծում: Հանդիսատեսը ծիծաղում է, բայց բեմահարթակից տրվող դասերը չի «կիրառում», օրինակում կյանքում: Միայն ծիծաղեցնել՝ չափից ավելի խեղդող է ու հիմարավուն: Եվ... Անդրեյը ամբողջապես հրաժարվեց գրիմից, նրա հերոս Պրիսիպկինը թեև այժմ էլ առաջվա նման ծիծաղելի էր, սակայն արդեն նոր տեսքով հանդես գալիս սարսափելի էր որպես մարդ:

Ժամը 11-ն է: Հեռախոսի զանգ: Ներկայացումն ավարտվել է. ոչ մեկին հյուր չի գնացել, չի հրավիրվել, այ, այժմ կարելի է հանգստանալ, զանգահարել բարեկամներին, նորություններ փոխանակել:

— Բարև՛, Գրիգորի:

— Բարև՛, Անդրեյ:

— Ի՞նչ ես անում:

— Գրում եմ... քո մասին...

— Հետաքրքիր թեմա է... Ինչպե՞ս է ստացվում:

— Չգիտեմ, կկարդաս՝ կասես: Ի միջի այլոց, քո համար չեմ գրում, այլ ընթերցողների: Ավելի լավ է հետդ կարճ հարցազրույց վարեմ: Եթե չապրեիր Մոսկվայում, ուրիշ ո՞ր քաղաքում կուզենայիր բնակվել:

— Չեմ մտածել... Հավանորեն... Լենինգրադում:

— Ասենք ազգանունդ Միրոնով չէ, ու-

րիշ ի՞նչ ազգանուն կուզենայիր կրել:
— Մենակեր:
— Եթե դերասան չլինեիր, ի՞նչ մասնագիտությամբ կուզենայիր զբաղվել:
— Թարգմանություններով: Անգլերենից թարգմանություններ կանեի..
— Ասենք արդեն դարձել ես նշանավոր թարգմանիչ, հարուստ մարդ, ապրում ես Լենինգրադում, ընդարձակ բընակարան ունես, մեքենա, «վիդիո» և այլըն, և հանկարծ քեզ ասում են. ...ընկեր Մենակեր, պատրա՞ստ եք այդ ամենը թողնել և աշխատանքի անցնել թատրոնում որպես... դերասան: Սկզբի համար՝ աշխատավարձը 90 ռուբլի: Կգնայի՞ր...
— Հարցերի ապուշ հերթականություն...

— Ոչ, պատասխանիր... Կգնայի՞ր:
— Դե, իհարկե, թեկուզ ցավում եմ «վիդիոյի» համար...
Միրոնովն այդպես է. ծնվել է թատրոնում, ապրում է թատրոնում, թատրոնը նրա մեջ է թե՛ ներսից, թե՛ դրսից, ամեն վայրկյան, ամեն պահ: Թատրոնում էր և թատրոնից չէր կարողանում հագնել: Նրա համար քիչ էր նշանավոր դերասան լինելը, նա սիրում էր թատրոնը կազմավորող բոլոր աշխատանքները: Ուզում էր լինել և՛ թատրոնի նկարիչը, և՛ լուսավորողը, և՛ զգեստներ ձևավորողը, և՛ անգամ... տոմսավաճառը: Այդ էր պատճառը, որ նա փոթորկի նման կըպավ ռեժիսուրային: Ռեժիսոր Միրոնովը, նայում ես՝ մեկ դահլիճում է, մի վայրկյան անց՝ բեմում, քիչ հետո՝ վերևից՝ լուսավորողների օթյակից դիտողություններ է անում: Ֆլեգմատիկ բնավորության տեր Ծիրվինդտը նրան նմանատիպ թռիչքների համար անվանում էր «մոծակ»: Եթե անգամ Անդրեյը իրեն ստիպում էր նստել ռեժիսորական սեղանիկի մոտ, նրանից այնպիսի ուժեղ հոսանքներ էին ուղղվում բեմահարթակ, որ ամեն մի փորձ անցնում էր մեծ լարվածությամբ, ինչպես սովորաբար լինում է պրեմիերաների ժամանակ: Այդ լարվածությունը իր հետևանքն ունեցավ. մի օր նրա լսողությունը խանգարվեց: Մարդիկ գիշեր-ցերեկ զանգահարում էին. «Ի՞նչ է պատահել Անդրեյին», «Այդ բանը ե՞րբ եղավ»: Եվ թեկուզ պատասխանում ես, որ բարեբախտաբար «այդ բանը» չի եղել, թեկուզ՝ որ նա իսկապես հիվանդանոցում է, վիրահատել են, բայց ամեն ինչ լավ է անցել, ապրում է և շնորհով բոլորովին առողջ կլինի, այնուամենայնիվ, թատրոնը լցվել էր նամակներով ու հեռագրերով: Հոգնած հերթապահուհին լացակումած ձայնով լսափողի մեջ աղերսում է. «Բավական է զանգահարեք. Միրոնովը ապրում է, իսկ այ, ես ձեր զանգերից շուտով շունչս կփչեմ»: Գնացի հիվանդանոց, ծիծաղելով սկսեցի պատմել Անդրեյին, թե երկրպագուները ինչպես են իրար խառնվել: «Մինսկից զանգահարել են,— ասացի,— Նովոսիբիրսկից նույնպես, Բուլղարիայում սուգ է»: «Իսկ Հարավսլավիայում հանգիստ է,— վայրկենապես խաղի մեջ է մտնում նա:— Այլանդակություն: Ես երկու անգամ այնտեղ ելույթ եմ ունեցել: Համբուրում էին, մինչև գերեզման սեր խոստանում, և ահա խնդրեմ՝ այնտեղից ոչ մի զանգ»: Հանկարծ լռում է՝ վիրահատությունը իսկապես որ ծանր է անցել, իսկ առջևում՝ դեռ մեկն էլ կա...
Այժմ Անդրեյը 46 տարեկան է, առողջ է (աչքով չտանք) բեմականացնում է Սալտիկով Շչեդրինի ամենաբարդ պիեսը, նկարահանվում է կինոյում, մեծ հաղորդում է պատրաստում հեռուստատեսության համար, և անբավարարվածության զգացումը նրան օգնում է իրոնիայով մոտենալ նախ և առաջ իրեն:
— Բարև՛, Անդրեյ:
Ակնարկը վերջացրել ու զանգահարում եմ: Գիշեր է: Լսափողի մեջ Անդրեյի ձայնը քնատ է ու դժգոհ:

— Ալլո:
— Բարև՛, Անդրեյ:
— Այդ դո՞ւ ես, Գրիգորի, ի՞նչ է պատահել:
— Գրել-վերջացրել եմ, ուզում եմ կարդալ:
— Գժվե՞լ ես, ինչ է, գիշերվա երեքն է...
— Սվետլովն ասել է, որ ընկերությունը «շուրջօրյա» հասկացություն է:
— Դու քեզ հիմարի տեղ մի դնի, անորմա՛լ... ես քնել եմ ուզում: Վաղը կըկարդաս, ու նետում է խոսափողը:
Ես դասավորում եմ գրածս թղթերը ու պառկում քնելու: Մի ժամ անց՝ հեռախոսի զանգ:
— Ալլո: Գրիգորի... Դու արդեն արթնացա՞ր:
— Հա, ի՞նչ կա որ:
— Ոչ մի բան, ուրեմն հենց ժամանակին էլ զանգել եմ, դե, կարդա, տեսնենք ինչ ես հորինել:



# ՊԱՅՔԱՐԻՐ ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋ

Լուսանկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ՀԵՔԵՔՅԱՆԻ

1981 թվականին հանրապետության պատանեկան սպորտի տասը լավագույնների ցուցակում նշված էր նաև Լենինականի № 1 դպրոցի շրջանավարտ, դասական ոճի ըմբիշ, դպրոցականների համամիութենական 16-րդ սպարտակիադայի չեմպիոն, ՍՍՀՄ պատանեկան առաջնության հաղթող Լևոն Ջուլֆալակյանի անունը:

Եվ ահա այսօր անվանի ըմբիշը ոչ միայն արդարացրել է այդ վստահությունը, այլև հուսախաբ չի անում հազարավոր իր երկրպագուներին: Այդ է վկայում թեկուզ Հունգարիայի մայրաքաղաք Բուդապեշտում կայացած դասական ոճի ըմբշամարտի աշխարհի առաջնությունը, որտեղ նա նվաճեց աշխարհի չեմպիոնի պատվավոր կոչումը:

— Ինչ խոսք, այդ հաղթանակը ինձ հեշտ ու հանգիստ չտրվեց,— ասում է անվանի մարզիկը,— բուդապեշտյան ըստուգատեսում հանդես գալով 68 կգ քաշային կարգում, ընդամենը երեք օրվա ընթացքում անցկացրի յոթ գոտեմարտ: Իմ մրցակիցներն էին մարզաշխարհին քաջածանոթ այնպիսի անվանի ըմբիշներ, ինչպիսիք են ռումինացի Ստեֆան Նեգրիշանուն, բուլղարացի Ռուդոլֆ Տոնեևը, ֆինն Տապիո Սիպիլան, ֆրանսիացի Ժալբերտ Քիլեսը, դանիացի Մորեն Վիլհելմսենը, հունգարացի Շանդոր Սաբոն: Դժվարին գոտեմարտում, ի վերջո, ինձ հաջողվեց հաղթել նրանց:

23-ամյա ըմբիշն իր մարզական հաղթարշավը սկսեց դեռևս պատանեկան տարիքից, և սկսեց գրոհել համամիութենական և համաեվրոպական բարձունքները: 1983 թվականին պատանիների ՍՍՀՄ առաջնության եզրափակիչում փայլուն հաղթանակ տարավ Օլեգ Իգոնինի նկատմամբ, 1984 թվականին հաղթող ճանաչվեց Եվրոպայի պատանիների առաջնությունում, իսկ ընդամենը մեկ տարի անց ոչ միայն տիրեց երկրի գավաթին, այլև Շվեդիայի Լունդ քաղաքում նվաճեց աշխարհի գավաթը:

— Ինձ համար հաջողակ էր հատկապես անցյալ տարեմուտը,— շարունակում է միջազգային կարգի սպորտի վարպետը,— դեռևս հունվարին Շվեդիայի Վեստերոս քաղաքում անցկացված «Ոսկե առյուծ» միջազգային մրցաշարում հաղթող ճանաչվեցի, իսկ ապրիլին Հունաստանի Հիրեա քաղաքում առաջին անգամ արժանացա Եվրոպայի

չեմպիոնի պատվավոր տիտղոսին:

Այս բոլոր հաջողությունների մեջ «մեղքի» իր բաժինն ունի Լևոնի մարզիչը՝ ՍՍՀՄ վաստակավոր մարզիչ Արամ Սարգսյանը: Առաջինը նա նկատեց շնորհալի պատանուն և հրավիրեց իր մոտ՝ «Սպարտակ» կամավոր մարզական ընկերություն:

— Սկզբում հաճախում էի Լենինականի մարմնամարզության դպրոց,— վերհիշում է Լևոնը,— մի օր էլ իմ մարզումները դիտելու էր եկել ընկեր Սարգսյանը: Երբ ավարտվեց պարապմունքը, նա իր մոտ կանչեց ինձ և ասաց. «Փոքրիկ, կուզենա՞ս ըմբշամարտով զբաղվել»: Անկեղծ ասած, մտքովս անգամ չէր անցել ըմբշամարտը: Սկզբում տարակուսեցի և անորոշ շարժեցի ուսերս: Նա քաջալերեց ինձ, ոգևորեց և անմիջապես հենց հաջորդ օրվա համար պայմանավորվեցինք հանդիպել: Գնացի, իսկ արդյունքքն եղավ այն, որ չանցած երկու ամիս՝ պատանիների երկրի առաջնությունում գրավեցի չորրորդ տեղը:

Այսօր Լևոն Ջուլֆալակյանի մարզական կենսագրության քարտեզն իր մեջ ընդգրկում է ոչ միայն Միության մի շարք քաղաքներ, ինչպիսիք են՝ Տալինն ու Կաունասը, Գորդնին ու Յոշկար-Օլան, Կրասնոյարսկն ու Կարագանդան, Ուֆան ու Ալմա-Աթան, այլև Օսլոն ու Կոպենհագենը, շվեդական Վեստերոսն ու Լունդը, Փարիզն ու Բուդապեշտը…

— Հիշում եմ՝ Հունգարիայից հաղթանակած վերադառնալուց հետո Լենինականի № 1 դպրոցը, ուր սովորել եմ ես, հանդիպում կազմակերպեց ինձ հետ,— շարունակում է Լևոնը,— ուրախալին այն է, որ հենց մեր դպրոցում այսօր արդեն բազմաթիվ պատանիներ կան, որոնք հաճախում են ըմբշամարտի քաղաքային դպրոց: Նրանց խորհուրդներ տալու պահին, չգիտեմ ինչու, հիշեցի իմ սիրելի մարզիչի խոսքերը. «Գոտեմարտելիս ունեցիր մեծ կամք ու տոկունություն: Պայքարիր մինչև վերջ: Անկարելի թվացող պահը դարձրու հնարավոր: Հիշիր. մեծ սպորտում անհնարին ոչինչ չկա…»:

Այսօր, ժամանակին ինձ հասցեագրված իմ մարզիչի այս խորհուրդը կուզենայի փոխանցել նաև նրանց, ովքեր առաջին քայլերն են անում ըմբշամարտ մարզաձևում:

ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆ

ԷԴՈՒԱՐԴ ԽԱՉԻԿՅԱՆ

## Ջկնորսը

Կանաչ կոհակները մանչուկի ոտքերի մոտ նետեցին արծաթափայլ թեփուկներով մի ձկնիկ: Հոգեվարքի մեջ թպըրտալով, ձուկը բաց ու խուփ արեց բերանը, պոչիկը զարկելով ավազին: Ծովը հուսահատ մռնչաց ու բարկությունից փրփրեց: Ալիքները մոլեգնորեն ֆշշացին և աղմուկով զարկվեցին մամռոտ խութերին: Ջրի ցայտերը ընկան ձկնիկի վրա, ու ավազը հագեցած թշշաց: Ձըկնիկի մոտ կանգնեց արևախանձ մի մանչուկ, վերցրեց նրան ու շպրտեց ալիքների մեջ: Արծաթափայլ մարմինը մի պահ շողաց փրփուրների մեջ, ու ծովը ողջագուրեց նրան: Հրմշտող ալիքները աստիճանաբար հանդարտվեցին և հանգըստացած ծփացին տղայի ոտքերի մոտ: Մանչուկը ինքնագոհ ժպտաց և վերցրեց ավազին դրված զամբյուղը, որը բերնեբերան լի էր… արծաթափայլ ձկներով:

## Մեծահասակներ

Փոքրիկ տղան ավազից տուն էր պատրաստել: Հողոտ ափով մաքրեց ճակատը ու շրջվեց գուլպա գործող տատի կողմը. «Նայիր»,— ինքնագոհ ասաց:— «Հա, հա, լավն է»:

Տատը գլուխը չբարձրացրեց, նա հենց այդ թոռան համար էր գուլպա գործում: Տղան հոգոց հանեց, ուռեցրեց վերին շուրթը ու շարունակեց կառուցել:

«Փոքրիկս, ոտքի տակ ես ընկնում»:

Տղայի կողքով մի զույգ անցավ և հողե տանիքին մնաց ներբանների դաջված հետքը:

«Տատ, նայիր…»:

«Հա, հա, լավն է»:

Տատը գուլպա էր գործում: Տղայի աչքերը արցունքոտվեցին:

«Ոչինչ, եկ նորը սարքենք»:

Նրա կողքին կանգնել էր փոքրիկ մի աղջիկ:

# ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

# 1886






Ամենաառաջին ավտոմոբիլի ծննդյան օրը համարվում է 1886 թվականի հունվարի 29-ը, երբ գերմանացի գյուտարար Կարլ Ֆրիդրիխ Բենցը ստացավ № 37435 կայսերական արտոնագիրը: Նա հայտնագործեց երեքանիվանի ինքնագնաց սայլակ, որն ուներ 1 ձիաուժ հզորությամբ չորստակտ բենզինե շարժիչ:

Այդ նույն ժամանակ մի ուրիշ գերմանացի գյուտարար՝ Գոտլիբ Դայմլերը, հայտնագործեց համարյա նույնատիպ մի շարժիչ, որը, սակայն, կես ձիաուժ պակաս ուներ, և տեղադրեց չորսանիվանի թեթև երկտեղանի կառքի վրա: Ահա այսպես, երկու կոնստրուկտորները պատրաստեցին աշխարհում առաջին ավտոմոբիլները:

Միաժամանակ սկսեցին սահմանել ճանապարհային տրանսպորտի առաջին կանոնները:

Այսպես, Բենցին արգելված էր ավտոմոբիլը վարել ժամում 12 կմ-ից ավելի արագությամբ՝ գյուղական ճանապարհներով, ինչպես նաև արգելված էր շրջադարձերի ժամանակ և բնակավայրերում զարգացնել ժամում 6 կմ-ից ավելի արագություն: Բացի այդ, առաջին գյուտարարին խիստ կարգադրված էր շարժիչի վրա տեղադրել պաշտպանական պատյան, ավտոմեքենան սարքավորել ոչ այնքան սուր ձայնազդանշանով, որպեսզի ձիերին ու հետիոտներին նախազգուշացներ իր մոտենալու մասին:

Յոթ տարի անց Ֆրանսիայում հայտնըվեցին տասնյակ նոր ավտոմոբիլներ, և Փարիզի ոստիկանությունը ստիպված էր սահմանել իսկական վարորդական իրավունքներ:

Ճիշտ է, ի տարբերություն մեր օրերի, իրավունքը կարելի էր ձեռք բերել առանց որևէ քննություն հանձնելու:

Այն բանից հետո, երբ Կարլ Բենցը և Գոտլիբ Դայմլերը պատրաստեցին իրենց ավտոմոբիլները, իշխանությունները արգելեցին օգտվել դրանցից: Իսկ Բենցի արհեստանոցի մոտ նույնիսկ ոստիկան կանգնեցրին, հրամայելով նրան թույլ չտալ «առանց ձի տրանսպորտի» տիրոջը դուրս գալ փողոց: Եվ շարունակ կրկնվող պահանջներից հետո միայն 1888 թվականի օգոստոսի 1-ին ինքնագնաց սայլի տերը ավտոմոբիլով երթևեկելու հինգ տարվա ժամանակավոր թույլատրություն ստացավ: Այդ թույլատրությունը կարելի է համարել պատմության մեջ առաջին վարորդական իրավունքը:

Սկզբում որպես ավտոլցակայաններ ծառայում էին սովորական դեղատները, որտեղից վարորդները գնում էին մեկ-երկու շիշ բենզին: Սակայն արդեն 1905 թվականին ամերիկյան Սենտ-Լուիս քաղաքում բացվեց «Բենզինի պահեստ՝ ավտոմոբիլների համար», իսկ հետո Սիէթ-

լում բացվեց առաջին բենզինի լցակայանը: Այն իրենից ներկայացնում էր կաշեփողրակով մի մեծ բաք, որը տեղադրված էր բարձր հարթակի վրա:

Ձեռքի պոմպով աշխատող առաջին լցակայանը բացվեց 1922 թվականին Բեռլինում:

Այսօր ներքին այրման շարժիչով աշխատող մեքենային փոխարինելու է գալիս էլեկտրոմոբիլը, որի էկոլոգիական առավելությունը բենզինով աշխատող ավտոմոբիլի նկատմամբ հայտնի է բոլորին: Սակայն էլեկտրոմոբիլների լայն տարածմանը խանգարում է նրանց առայժմ փոքր էներգապաշարը: Փորձեր են կատարվում հաղթահարելու այդ արգելքը, էլեկտրոմոբիլի վրա տեղադրելով արևային մարտկոցներ, որոնք ի դեպ, նույնպես ունեն իրենց թշնամին՝ ամպամած եղանակը: Եվ, այնուամենայնիվ, արևային մարտկոցներով էլեկտրոմոբիլների երկրպագուների թիվը գնալով ավելանում է: Շվեյցարիայի լեռնային ճանապարհներին արդեն անց են կացվել էլեկտրոմոբիլների մրցումներ:

Ավտոմեքենան Հայաստան է մուտք գործել 1913 թ. մայիսին՝ Ալեքսանդրապոլ, սեպտեմբերին՝ Երևան, իսկ 1914-ին՝ Կարս, Դիլիջան, Ղարաքիլիսա, Գորիս: 1914-ից ավտովարորդների դասընթացներ են կազմակերպվել Ալեքսանդրապոլում, Կարսում, Երևանում և այլուր: 1929-ի մայիսին Հայաստանում ավտոմրցումներ են անցկացվել Երևան—Սևան—Դիլիջան—Կիրովական—Ստեփանավան—Լենինական—Արթիկ- Ապարան—Աշտարակ—Երևան երթուղով:

---

## «ՊԻՈՆԵՐ» № 1-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. Հավասի: 2. Կալենց: 3. (հորիզոնական) Նաղաշ: 3. (ուղղահայաց) Նար Դոս: 4. Վարազ: 5. Գրիգոր: 6. Ուրմիա: 7. Իսահակյան: 8. Եզնիկ: 9. Սասուն: 10. Աշոտ: 11. Սոսի: 12. Մառ: 13. Վան: 14. Մարգարյան: 15. Թոնուն: 16. Անհաղթ: 17. Արոր: 78. Ժանսեն: 19. Ռուլին: 20. Անուշ: 21. Արաքս: 22. Գուսան: 23. Սիփան: 24. Ցեցեր: 25. Լիլիթ:

Գաղտնագրում կարդում ենք՝

ՍՈՂՈՄՈՆ ԹԵՀԼԵՐՅԱՆ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 2 • 88



*Հանձնված է արտադրության 01.12.87 թ.: Ստորագրված է տպագրության 09.02.88 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65432: Պատվեր՝ 2336: Գինը՝ 15 կոպ.:*

***Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:***

Сдано в набор 01.12.87 г. Подписано к печати 09.02.88 г. Формат 70×100 1/16. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 65432. Заказ 2336. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

Շապիկի 1-ին և 4-րդ էջերին՝

**ՌՈՒԲԵՆ ԱԴԱԼՅԱՆ «ԴԵՊԻ ԵՐԵՎԱՆ». 1968 Թ., «ՏԱԹԵՎ. 1921 Թ.». 1978 Թ.**

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



# Ողջույն տվեք

(ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ)

Ողջույն տվեք իմ հայրենյաց կիսակործան տաճարներուն,
Ողջույն տվեք ավերակաց Արարատյան գավառներուն:
Ողջույն տվեք պանդուխտ հայուն, անտուն հայուն, վշտոտ հայուն
Օ, ձեռք տվեք, օ, սիրտ տվեք, հոգի տվեք կարոտ հայուն:


Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆԶՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):
Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.: